# Ի՞նչ եմ երազում

ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆԻ

Ի՞նչ եմ երազում.
Կապույտ ու խաղաղ մի երկնակամար՝
Բոլոր աստղերի,
Բոլոր հավքերի
Եվ մանկանց համար:
Գեղեցիկ ձմեռ, ծաղկաշատ գարուն,
Ոսկեվառ աշուն, արևշող ամառ՝
Աշխարհի մարդկանց
Եվ մանկանց համար:

Ի՞նչ եմ երազում.
Ջրեր կարկաչուն, արևներ անմար՝
Բոլոր ծիլերի,
Բոլոր ծառերի
Եվ մանկանց համար:
Մի լուսե գալիք,
Ուր չկա մշուշ ու չկա խավար,
Ուր բաբախում են սրտերը բոլոր
Աղավնիների
Եվ մանկանց համար:

Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

## ԲՈԼՈՐՍ ԵՎ ԻՄ ԵՂԲԱՅՐ ԽԱՉՈՆ

ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ՄԻՆԱՍՅԱՆԻ

Մեր կողմերում թոնիրները վառում են արքադով, արքադով խորոված են անում, արքադով ծածկում են դագաների կտուրները, արքադով ցանկապատում են պարտեզները, մի խոսքով, արքադը հազար ու մի գործածություն ունի:

Բայց մեզանից ոչ մեկը արքադի մի գործածության մասին չգիտեր, մինչդեռ, ինչպես կտեսնենք, այդ գործածությունը մի հետաքրքիր պատմության սկիզբը դրեց:

Գյուտն արեց իմ եղբայր Խաչոն, արեց պատահաբար, ծեռքի տակ մատիտ չունենալու պատճառով:

Առավոտյան ես ու Խաչոն ծեծ էինք կերել՝ Հովակենց շաքարկենի խնձորը գողանալու համար, իսկ երեկոյան նստել էինք մեր դագայում ու վրեժի զանազան պլաններ էինք մշակում: Խաչոն ինձնից տաքարյուն էր, դրա համար էլ նրա առաջարկները աչքի էին ընկնում առանձին խստությամբ.

— Թաքուն դագան վառենք...

— Չէ՛:

— Ջուրը բաց անենք, թող դրանց լոբին քշի...

— Չէ՛:

— Հորթը բաց թողնենք, գցենք առվույտը, թող ուտի-տրաքի...

— Չէ՛:

— Բա ի՞նչ անենք,—լացակումեց Խաչոն:

— Հովակին ծեծենք:

— Կարա՞նք որ:

— Երկուսով:

— Մենակ երկուսիս կծեծի,—հառաչեց Խաչոն:

Ես կախեցի գլուխս. Հովակը մենակ երկուսիս

ԴԵԿՏԵՄԲԵՐ
№ 12 1961 Թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
33-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

կծեծեր, ինչպես ծեծել էր առավոտյան, առանց դժվարության, հավաքված տղաներին ժպտալով:

— Բա ի՞նչ անենք...

Նստել էինք դագայում, օջախի առաջ, նայում էինք օջախին դրված մրոտ թեյնիկին, նայում էինք դրա տակ վառվող արքաներին ու կոտրված մտածում։

Դագայի խորքում, քարե թախտի վրա այրվում էր նավթի լամպը, օջախում ճթճթում էր արքաղը՝ դեղնակարմիր բոց արձակելով։ Այդ գունատ լույսի մեջ շառագունած նստել էինք ես ու Խաչոն և բա։կությունից կծոտում էինք եղունգներս...

— Ջայը եփեց,— ասացի ես։

— Ջհանդամը...

Խաչոն օջախից դուրս քաշեց մի արքաղ, բոցը հողի մեջ հանգցրեց ու մոտեցավ դագայի կրով սվաղած պատին։ Արքաղի ծայրնածխացած դեռ ծխում էր: Խաչոն ուշադրություն չէր դարձնում։ Ես գլխի չէի ընկնում, թե նա ինչ է անելու:



Մի քանի րոպե հետո դագայի կրով սվաղած պատից ինձ էր նայում Հովակը...

Տարօրինակ էր: Դա և՛ Հովակն էր, և՛ Հովակը չէր։ Այնքան նման էր Հովակին, որ հաջորդ օրը բոլորն առանց բացատրելու ճանաչեցին, և՛ միաժամանակ բոլորովին էլ Հովակը չէր, քանի որ ավանակի դունչ ուներ, ավանակի ականջներ և, չգիտես ինչու, այծի եղջյուրներ:

Բարձրաձայն ծիծաղեցի:

Խաչոն շրջվեց.

— Հը՞...

— Ա՛յ տղա, էդ ո՞նց արիր։

Ժպտաց:

Ես էլ օջախից արքաղ հանեցի։ Թեյնիկը մոռացվեց։ Մինչև ուշ գիշեր դագայի կրով սվաղած պատին Հովակ էինք նկարում:

Ճիշտն ասած, իմ նկարներից ոչինչ չէր ստացվում, այնքան, որ երբ Խաչոն արգելեց պատերի ազատ մնացած տեղերը խզմզել, ես անխոս հնազանդվեցի։

Առավոտյան բոլոր տղաները հավաքվեցին մեր դագայում, ու շուտով գետափով մեկ դրմբաց Խաչոյի նկարների լուրը...

Առաջին հետևանքները մխիթարական չեղան։ Երկու ծեծ կերանք: Նախ թեթևակի «տաքացրեց» հայրիկս՝ դագայի նոր սվաղած պատերը փչացնելու համար։ Երկրորդ անգամ ճաշին ծեծեց Հովակը։ Ծեծեց հիմնավոր, ժամանակ էլ չտալով պատասխանելու։

Բայց եղածը եղած էր։ Դպրոցում, թե փողոցում գյուղի տղաներն արդեն չէին կարողանում առանց ժպտալու նայել Հովակին, իսկ Խաչոյի նկարչական շնորհքի մասին առասպելական համբավ տարածվեց:

Մեր թվաբանության դասատուն, որ մասնագետ ուսուցիչ չլինելու պատճառով, միաժամանակ նաև նկարչություն էր ավանդում, նույնպես հետաքրքրքրվեց Խաչոյի տաղանդով։

— Վաղը նկարներդ բեր տեսնեմ։

— Ի՞նչ նկար։

— Այն ծաղրանկարներդ։

Մենք ստիպված եղանք բացատրել, որ նկարները եղել են դագայի պատին, որ դրանք այլևս չկան, քանի որ հայրիկս հենց մեզ ստիպեց կրա-



ջրով նորից սպիտակեցնել դագայի պատերը։
— Արի՛ գրատախտակի մոտ,— ասաց Խաչոյին։
Խաչոն գնաց գրատախտակի մոտ։
— Վերցրո՛ւ կավիճը։
Խաչոն վերցրեց կավիճը։
— Նկարի՛ր։
Խաչոն նկարեց։
Ամբողջ դասարանը հռհռում էր։ Իսկ դասամիջոցին կրկին ծեծ կերանք Հովակից։

* * *

Երեկոյան դասատուն մեր տուն եկավ։ Հայրս մռայլ նայեց ինձ ու Խաչոյին. նա ոչ մի լավ բան չէր սպասում։ Վարժապետը եկել է, կնշանակի ես կամ Խաչոն մեր դպրոցում մի «ղալաթ» ենք արել։ Մինչդեռ մայրս ոտ ու ձեռ ընկավ՝ անակնկալ հյուրին հյուրասիրելու։

Մեր դասատուն նստեց։ Ես ու Խաչոն սսկվեցինք, էլեկտրականացանք։
— Քեֆ-հալ,— հարցրեց դասատուն։
— Սաղ ըլես։
— Տնամերձի խաղողն ինչպե՞ս է։
— Բո՛լ... խաղողին ինչ ա եղել։
— Լավ տղաներ ունեք, ընկե՛ր Մեսրոպ։
— Հը՞, հո ղալաթ չե՞ն արել։
Դասատուն ծիծաղեց։
— Չէ՛, չէ՛, ես ուրիշ բանի համար եմ եկել։
Ես ու Խաչոն թեթևացած շունչ քաշեցինք։ Հայրիկս պայծառացավ։
— Մանիշա՛կ,— ձայն տվեց մայրիկին,— մի էն շիշը բե՛ր։
Մեր դասատուն հրաժարվեց օղի խմելուց, դրա փոխարեն երկու բաժակ թեյ խմեց ու մինչև ուշ երեկո հորս բացատրում էր, որ բնածին շնորհքը միշտ չի լինում, որ հարկավոր է Խաչոյին քաջալերել, ուղղություն տալ։
Զարմացած հայրս տմբացնում էր գլուխը, անիմաստ ժպտալով, իսկ մայրս ամբարից մի գլուխ զանազան մուրաբաներ էր բերում։

* * *

Քաջալերանքն սկսվեց նրանով, որ մեր ուսուցիչը Խաչոյի համար քաղաքից մի կապոց վատման թուղթ բերեց ու մի կապ ածուխի ձողեր։
Հետո Խաչոյին ստիպեցին նկարել ու ձևավորել դպրոցի բոլոր պատի թերթերը։
Հետո Խաչոյի մասին գրեցին պիոներական թերթում, քանի որ նրա նկարը կոնկուրսում մրցանակ շահեց։
Հետո...
Հետո ես սկսեցի կարոտել Խաչոյին։ Այժմ բարկանալիս Հովակը միայն ինձ էր ծեծում. Խաչոն այլևս գյուղում չէր, քաղաքում էր սովորում, գեղարվեստի ուսումնարանում։
Հիմա մեծացել ենք։ Ես մեր գյուղի կոլտնտեսության նախագահն եմ, Հովակը՝ գլխավոր գյուղատնտեսը, իսկ Խաչիկ Բաղմանյանը, մեր Խաչոն, նշանավոր գեղանկարիչ է։
Էլ չենք ծեծում իրար, ընդհակառակը, շատ ենք մտերիմ։ Խաչոն արդեն երկու անգամ նկարել է գյուղատնտեսության առաջավոր Հովակ Մովսիսյանին, ամեն աշնան կնոջ ու երեխաների հետ մեզ հյուր է գալիս, և ամեն անգամ, երբ նրա գալու առթիվ ընկերներով հավաքվում ենք, Հովակը առիթը բաց չի թողնում ասելու.
— Որ ես քեզ չծեծեի, դու ինձ վրա չբարկանայիր, հիմա հո նկարիչ չէի՞ր լինի։
Ոչ ոք չի առարկում։ Ժպտում ենք, թեև բոլորս էլ այն կարծիքին ենք, որ, միևնույն է, Խաչոն նկարիչ կդառնար, քանի որ մի օր, մի առիթով իրեն զգալ կտար նրա շնորհքը։

# ՁՄԵՌ-ՆԿԱՐԻՉԸ

ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Ծաղիկները մտան քուն,
Լռեց առուն շատախոս,
Կապույտ ամպը երկնքում
Անհետացավ սուսուփուս:
Ճերմակ վրձինը առած,
Քիթ-ականջները սառած,
Փարթամ-փարթամ մորուքով,
Ճերմակ-ճերմակ աչքունքով,
Առանց աղմուկ, առանց ճիչ
Եկավ մի մեծ նկարիչ.

Սև ցելերը մի օրում
Ճերմակեցին, ծերացան,
Ճնճղուկները դաշտերում
Կորան, եղան ցիրուցան:
Անցավ դաշտով ու սարով,
Ճամփաներով, անտառով,
Ներկեց ամեն ինչ ճերմակ,
Փռեց անծայր մի վերմակ,
Որը դերձակ չի չափել,
Որին ասեղ չի դիպել:



# ՄՈՏՈՑԻԿԼԵՏԸ ԵՎ ԵՍ

ՀԱՅԿ ՎԱՐԴԱՆՅԱՆ

*Չորս ժամ էր, որ ես Սաքոյի մայթին կանգնած նայում էի փողոցի մեջտեղում մնացած մի «Հարլեյ» մոտոցիկլետի: Չորս ժամ ու ոչ ոք չէր երևացել: Տերը չկար ու չկար: Ուրեմն նա առհասարակ չի եղել, և ես ավելի ու ավելի էի համոզվում, որ մոտոցիկլետի տերը ես եմ, միայն թե առաջ չգիտեի: Բայց որպեսզի լրիվ համոզվեի, որ մեքենան իմն է, պետք է էլի սպասեի:*

*Այն ժամանակ ես շատ էի ուզում մոտոցիկլետ ունենալ: Ամբողջ շաբաթներ ինձ զգում էի մոտոցիկլետի վրա և շտապում էի մի շատ կարևոր տեղ. փրկելու, ճիշտն ասած հիմա մոռացել եմ, թե ինչ: Իմ երևակայական մոտոցիկլետով ես թռչում էի երկինք, մտնում էի քաղաքներ, կինո, դասարան: Դասարանում բոլորը նստած են գրասեղանների մոտ՝ նստարաններին, իսկ ես մոտոցիկլետի վրա, և ուսուցիչը ինձ նկատողություն չէր անում:*

*Պարզ է, ուրեմն ես մոտոցիկլետ չունեի և շատ էի ուզում ունենալ:*

*Հայրիկին ես չէի խնդրել, որովհետև երբ մենք նրանից կինոյի փող էինք ուզում, նա փողը տալիս էր խնդրելուց երեք ժամ հետո: Եթե երկու ռուբլի տալիս էր երեք ժամ հետո, ապա մոտոցիկլետի արժեքը, եթե ունենար և ուզենար, նա կտար հարյուր տարի հետո: Այն ժամանակ ես կլինեի հարյուր տասներեք տարեկան և շատ հնարավոր է, որ չկարողանայի մոտոցիկլետի վրա նստած մնալ:*



Հարկավոր էր ուրիշ բան մտածել։ Ու ես ճարահատյալ գիրքեցի և երկար տատանումներից հետո համաձայնվեցի հեծանիվ ունենալ։ Բայց երբ նորից հիշեցի հայրիկիս և հաշիվ արի, պարզվեց, որ հեծանիվի համար էլ պիտի սպասեի քսանհինգ տարի։

Հարկավոր էր ուրիշ բան մտածել։ Եվ քանի որ աշխարհի բոլոր գանձերը հայտնաբերված էին, ես ճարահատյալ մի գանձանակ գտա և սկսեցի փող հավաքել։ Մեկ ամսում ես հավաքեցի չորս ռիալ։ Գումարն այնքան հուսահատական էր, որ ես այդ փողով միանգամից ութ պաղպաղակ կերա և չորս օր պառկեցի հիվանդ։

Ճար չկար. ես սկսեցի թափառել քաղաքում և հետևել մոտոցիկլետներին։ Դա շատ հեշտ ու հաճելի զբաղմունք էր։

Անցնում է մի մոտոցիկլետ. մոտոցիկլիստը հպարտ ու ինքնագոհ, առանց գլխի ընկնելու, որ նրա փոխարեն իր մոտոցիկլետի վրա ոչ թե ինքը, այլ գրեթե ես եմ նստած, իսկ ինքը քայլում է իմ փոխարեն։ Երբեմն էլ նույնիսկ ստիպված է վազել։ Կամ առնվազն մոտոցիկլետը վարում եմ ես, իսկ նա նստած է ետնամասում։ Այդպես երևակայելը մի մեծ առավելություն էլ ուներ. վթարի դեպքում, տուժում էի ոչ թե ես, այլ իսկական տերը։

Չորս ժամ էր, որ ես Սաադիի մայթից նայում էի փողոցի մեջտեղում թերված մի «Հարլե» մոտոցիկլետի։ Չորս ժամ ոչ ոք չէր մոտեցել, տերը չկար ու չկար։ Գուցե մոռացել էին, էլ չէին վերցնելու։ Ես համոզված էի, որ դա այդպես էր, և մեքենան գրեթե իմն էր։

Ես արդեն սեփականացրել էի մոտոցիկլետը, երբ չգիտես որտեղից, ֆոտոապարատը կողքին, հայտնվեց մեր թաղի տղաներից մեկը՝ Բերնարդին։ Նրա պապերից մեկը իտալացի էր. իտալոհաբեշական կռվի ժամանակ, երբ իտալացիներն էին հաղթում, նա իտալացի էր. իսկ երբ իտալացիները պարտվում էին, ասում էր, որ հայ է։

Բայց ընդհանուր առմամբ, իրեն շատ էր երևակայում, որովհետև երկազգանի էր ու ինձ էլ, որպես միազգանու, մի քիչ արհամարհում էր։

Նա մեկ-մեկ հետևում էր ինձ իմանալու համար, ի՞նչ թարուն գործերով եմ զբաղվում ես։ Նա մի գլուխ մտածում էր մեկնումեկից մի բան պոկել, փող աշխատել։ Մի քանի օր առաջ, երբ նա բակրսեց անգլերենի մասնավոր դասեր ստանալ, երկրորդ օրն արդեն նա տաս աշակերտ ուներ և հինգ անգամ շատ էր ստանում, քան վճարում էր ուսուցչին։

Երբ ես նրան նկատեցի, նա մոտեցավ։ Իր նոր ֆոտոապարատի արժեքը նա մի քանի օրում անպայման կհանի, դեռ մի բան էլ ավել։

— Հը՞։

— Ոչինչ,— ասացի ես։

— Մի՛ թաքցրու։

— Ոչինչ էլ չեմ թաքցնում։

— Ու՞ր ես նայում։

— Ինձ համար նայում եմ։

— Կիմանամ։

— Չե՛ս իմանա։

— Լավ, բարի եղիր խնդրում եմ, ասա բանն ինչո՞ւմն է։

Դա հենց այն էր, որից այնքան վախենում էի։ Երբ ինձ հետ քաղաքավարի են, ես իսկույն հանձնըվում եմ. դառնում սիրալիր և պատրաստակամ։

— Հաճույքով, խնդրեմ,— տխրությամբ ասացի ես։— Չորս ժամ է, որ այդ մոտոցիկլետի տերը չի երևում, գուցե չկա, հը՞։

—Չորս ժա՞մ,—զարմացավ Բերնարդին։



Նրա աչքերը փայլեցին. ես վատ բան գուշակելով, իսկույն ավելացրի.

— Ես չորս ժամ է, որ այստեղ եմ։ Դու ինչքան էլ սպասես, միևնույն է, ինձանից չորս ժամ պակաս սպասած կլինես։

Բերնարդին պարտված՝ մի քիչ մտածեց, հետո ասաց.

— Փչացած կլինի։ Թե չէ, լսիր, ինչո՞ւ էին թողնում, որ այդքան կանգնած մնա, կրչեին։

Նրա բերած փաստարկը չափազանց զորեղ էր. ես հուսահատվեցի։

— Եվ հետո,— շարունակեց Բերնարդին,— եթե փչացած էլ չլինի, տերը դիմացի շենքերից մեկում կարող է լինել. ասենք հարևանը տղայի կամ էլ մորաքրոջ աղջկա մոտ։

Նրա վերջին խոսքերը ինձ լրիվ թևաթափ արին։

Նա դեռ իր խոսքը չէր վերջացրել, երբ ճակատակ մայթին երևաց մի կիսահագնված, լայնաթիկունք ու ծանր մարդ, կաշվե ձեռնոցներով և տնտեսությամբ սկսեց նայել մոտոցիկլետին։

Ես իսկույն գլխի ընկա, որ դա հենց ինքն է՝ տերը։

— Իսկ հիմա ի՞նչ ես անելու,— հեգնեց Բերնարդին։

— Չգիտեմ,— ասացի ես։

— Մի բան կարելի է անել,— շշնջաց նա իմ ականջին։

— Ի՞նչ,— ուրախացա ես։

— Հիմա կասեմ, մի՛ շտապիր։

Ձևի համար նա մի քիչ մտածեց, ապա իր թեթև ձեռքով թխկացրեց ուսից կախած ֆոտոապարատին և ասաց.

— Այսպես ուրեմն... չմոռանաս ասել, որ քո համաձայնությունը շատ կարևոր է։

— Ինչի՞,— վրա բերի ես.— հետո՞։

— Դու ամենայն արագությամբ կմոտենաս մոտոցիկլետին և...

— Հետո՞։

— Մի՛ շտապիր, ես բացատրում եմ հաջորդականությամբ։ Ուրեմն կմոտենաս մոտոցիկլետին, ձեռքդ կդնես ղեկին, կընդունես համապատասխան դիրք և կեցվածք, ասես մոտոցիկլետը քոնն է, այսինքն՝ գլուխդ կբարձրացնես։ Ու ես քեզ կլուսանկարեմ մոտոցիկլետի հետ։ Չը՞խկ։

— Շո՛ւտ,— շշնջացի ես,— նա կարող է...

— Սպասի՛ր, մի՛ շտապիր, նա դեռ մի քիչ էլ կսպասի. այնպես չանես, որ մարդը գլխի ընկնի։ Այդ նկարը դու ինձանից կգնե՞ս, չէ՞։ Թե չէ ինքդ էլ գիտես, ձախս եմ անելու։

— Հանիր ապարատը,— ձայնս բարձրացրի ես։

— Ինչի՞.— Նրա դեմքին խաղաց մի ակընթարթային ժպիտ ու նա այնքան նմանվեց իր հորը, «Բաթա» ֆիրմայի սնանկացած ներկայացուցչին, որ ես այդ կարճ ընթացքում հասցրի զարմանալ, իսկ Բերնարդին հասցրեց նկատել այդ։ «Ձախս եմ անելու»— արտահայտում էր նրա դեմքը։

Իմ ձեռքը մոտոցիկլետի ղեկի վրա է, գլուխս վեր, հասակս երկու-երեք անգամ ավելի բարձր, ձեռնին ձգված մայրամուտի ստվերի չափ։

Իմ թիկունքում ինչ-որ թավ ու թույլ ձայն դժգոհ փնթփնթում է։

Բերնարդին բարձրացնում է ֆոտոապարատը։ Ամուր փակում է ձախ աչքը, մյուս աչքով ինքն ու ֆոտոապարատը զննում են ինձ, անդադարում...

Թավ ու թույլ ձայնը հիմա արդեն ոչ այնքան թավ է, ոչ էլ այնքան թույլ։

— Սպասե՛ք, սպասե՛ք,— գոռում է նա, բայց չի մոտենում, գամվել է տեղում։

— Ստոպկա՛ն, ստոպկա՛ն... դուք իրավունք չունեք։



Բայց ես մազաչափ անգամ չեմ կորցնում ինձ, ոչ էլ վախենում եմ։ Ես շատ լավ գիտեմ, որ նկարի ողջ արժեքը նրանումն է, թե ես ինչքանով կկարողանամ ինձ պահել մոտոցիկլետին վայել կեցվածքով։

— Սպասի՛ր, սպասի՛ր...— ձայնը բողոքում, փորձում է կանխել աղետը։ Նրան թվում է, թե ապարատը չխկա, ողջը՝ և մոտոցիկլետը, և ես կչքանանք, կուլ կգնանք ապարատին։

— Չըխ՛կ։

Ու ինձ թվաց, որ մեզանից ինչ-որ բան՝ ամենակարևորը, իրոք սուրաց դեպի ապարատը ու տեղափոխվեց մի ապահով ու խաղաղ անկյուն, իսկ մնացյալը, այդ արդեն ես էի և փողոցի մեջ-

*անդում մնացած մի մեքենա, որը չգիտես կկարողանա՞ր աշխատել, թե՞ չէ։*

*Բեռնարդին փախավ, իսկ ես գնացի նրա հետևից խաղաղ ու հոգնած: Քիչ հետո, երբ ես ետ նայեցի, տերը դեռ կասկածով ստուգում էր մոտոցիկլետը և գլուխ չէր ընկնում, թե ինչ է կատարվել։*

*Չգիտեմ որտեղի՞ց և ինչպե՞ս գտա ես հինգ ռիալը, վճարեցի Բեռնարդին և ստացա ֆոտո-նկարը։*

*Հրաշք էր, ես ոչ միայն իսկական մոտոցիկլիստ էի, այլև օդաչու: Բայց մի վայրկյան հետո ես ոչինչ էլ չէի։ Նկարի խորքում, ձեռքերը առաջ պարզած, անհամբեր ինձ էր նայում կաշվե ձեռնոցներով, ծանրամարմին տերը։*

*«Պյաստր, պյաստր», ինչ-որ տեղից իմ ականջին էր հասնում նրա թավ ձայնը։*

*— Նա է,— հուսահատ ասացի ես։*

*— Իսկապես որ,— ուրախացավ Բեռնարդին։*

*— Դու ինչո՞ւ ես նրան էլ նկարել։*

*— Բայց չէ՞ որ ուրիշ կերպ հնարավոր չէր, նա այնտեղ էր կանգնած,— հուզվեց Բեռնարդին,— և հետո չէ՞ որ մոտոցիկլետը նրանն է։*

*— Գիտեմ նրանն է, բայց...*

*Նա կարծում էր, որ ես նկարի փողը ետ եմ ուզելու, դրա համար էլ խոսեց երկար, քաղաքավարի ու սիրալիր, գործածեց չտեսնված նուրբ ու անհասկանալի բառեր, բայց դրանք ինձ վրա ոչ մի ներգործություն չունեցան։*

*— Եկ նրան ջնջենք,— ի վերջո անսպասելիորեն առաջարկեց Բեռնարդին։*

*Ջնջեցինք, բայց մնաց տեղը, և դա ավելի վատ էր։*

*Նկարը ես դեն եմ գցել ու ոչ մի մոտոցիկլետի էլ չեմ նայում։ Ես գտել եմ հեծանիվի մի հին ակ ու փոքրիկ փայտիկի կտորով անիվ եմ քշում։*



Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ




ՄԻՆԱՍ ՏԵՐՈՒՆԻ

Բեյրութի Ս. Նշան վարժարանի ուսուցչանոցում աղմուկ էր։ Առավոտյան անսովոր բան էր կատարվել: Դասարանների գրատախտակներին նկարել էին Արարատը, ստորոտում՝ տներ, վերևում՝ հնգաթև աստղ և տակը գրել. «Սա է մեր երկիրը, ուր խոսում են հայերեն, և որը կոչվում է Հայաստան»:

Ըստ պարոն տնօրենի դա «կարմիր ագիտացիա» էր։

Բոլորը վիճում էին, ենթադրություններ անում, իսկ մեղավորն անհայտ էր:

Լուռ էր միայն հայոց լեզվի ուսուցիչը:

Նա վստահ էր, որ դա փոքրիկ Վարդանի գործն է. չէ՞ որ Վարդանի հայոց լեզվի տետրակում նա տեսել էր այդպիսի մի նկար. չէ՞ որ այդ մանկական ստեղծագործության տակ ինքն իր ձեռքով հուզմունքով գրել էր. «Սա է մեր երկիրը, ուր խոսում են հայերեն, և որը կոչվում է Հայաստան»:

Նա ներքնապես ուրախ էր...

* * *

Վարդանը տասը տարեկան էր և դեռ Լիբանանից բացի ուրիշ ոչ մի տեղ չէր եղել, սակայն նրա հոգում ապրում էր մի այլ երկիր, որ կոչվում էր Հայաստան։

Պարզ էր նրա Լիբանանը՝ սարեր, տներ և կապույտ ծով: Մանկական հոգու պես պարզ էր նաև նրա Հայաստանը՝ երկգագաթ սար, տներ և հնգաթև աստղ:

Նա հաճախ էր նկարել իր պատկերացումները:

Այդ իրիկուն ևս նկարեց, հիացավ ու բարձի տակ դնելով, քնեց:

Երազ տեսավ, սկսեց թռչել:

Ո՞ր մանուկը երազում չի թռչում:

Նա թռչում էր գյուղերի ու քաղաքների վրայով, սակայն չգիտեր, թե ինչ երկիր է դա: Ականջ դրեց. ամեն տեղ հայերեն էին խոսում:

— Մի՞թե Հայաստանն է սա,— ինքն իրեն հարցրեց նա:

— Այո,— պատասխանեց անսպասելի կողքին

հայտնված ուսուցիչը.—սա՛ է մեր հայրերի երկիրը. նայի՛ր ու հիացի՛ր:

Վարդանը նայելով նրա ցուցամատի ուղղությամբ, հեռվում տեսավ Արարատը, ստորոտում՝ վարդագույն տներ, վերևում՝ հնգաթև աստղ:

Չքնաղ էր տեսածը, բայց ափսո՜ս, երազի թելը մեկեն կտրվեց...

Վարդանը զարթնեց: Երազը հոգում դպրոց շտապեց: Վաղ էր և ոչ ոք չկար: Մտավ դասարան, աչքերը սևեռեց գրատախտակին, և նրա ուղեղում մի միտք ծագեց. ինչո՞ւ ողջ դպրոցը չտեսներ իր նրազի Հայաստանը:

Նա տենդորեն անցավ դասարանից դասարան ու բոլոր գրատախտակներին նկարեց երկգագաթ սարը, ստորոտում տներ, վերևում հնգաթև աստղ և տակը գրեց. «Սա է մեր երկիրը, ուր խոսում են հայերեն, և որը կոչվում է Հայաստան»:

Սակայն, ինչպես բոլոր երեխաների մոտ է լինում, նրա ուրախությունը մեկեն փոխվեց երկյուղի. չլինի՞ թե իրեն պատժեն:



Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Գլխապատառ վազեց, որ ջնջեր նկարածները, բայց նույն վայրկյանին դարբասից ներս մտան իր ընկերները:

Վախեցած մի անկյուն քաշվեց ու, երբ լսեց զանգի ձայնը, առաջինը նա մտավ դասարան: Մինչ կառաջանար դեպի նստարանները, հետևից լսվեցին ուրախ բացականչություններ.

— Հայաստա՜նը, Հայաստա՜նը գրատախտակի վրա...

Վարդանը և՛ հուզվեց, և՛ վախեցավ:

Ներս մտավ նաև հայոց լեզվի ծեր ուսուցիչը, նայեց գրատախտակին և զարմացավ:

— Ո՞վ է նկարել,—հարցրեց նա:

Դասարանը լռեց, իսկ Վարդանը կծկվեց:

— Չգիտե՞ք: Նստեցե՛ք:

Նա ոչ բարկացավ, ոչ էլ նկարածը ջնջեց, այլ ոգևորված խոսեց Հայոց աշխարհի ու լեզվի մասին:

Հաջորդ ժամին եկավ տեսուչը և նկատելով գրատախտակի նկարը, օձի պես փշշալով, հարցրեց.

— Ո՞վ է նկարել:

Դասարանը լռեց, իսկ Վարդանը կծկվեց:

— Նորի՛ց եմ հարցնում՝ ո՞վ է համարձակվել գրատախտակը կեղտոտել:— Քար լռություն:

— Ոտքի՛,—ճչաց նա,—մի ժամ ոտքի՛...

Այդ ասելով՝ կատաղածի պես հարձակվեց գրատախտակի վրա և թքոտելով ջնջեց:

* * *

Վարդանը մենակ էր տանը, մայրը աշխատանքի էր գնացել: Ուզեց դաս պատրաստել, մտքերը ցրվեցին. ինչո՞ւ նկարեց, ի՞նչ էր լինելու, եթե իմանային:

Հանկարծ լսվեց դռան զանգը: Երևի մայրն էր: Ո՛չ, դռան առջև կանգնած էր հայոց լեզվի ծեր ուսուցիչը՝ ձեռքին մի տուփ:

Ինչո՞ւ էր եկել:

— Որդի՛, հյուր եմ եկել:

Ուսուցիչը նստեց աշակերտի կողքին և դողդոջուն ձեռքերով տուփից հանեց գիպսե մի խորաքանդակ.

— Ընդունի՛ր որպես հիշատակ...

Վարդանը ուրախացավ. դա իսկ և իսկ իր երազի Հայաստանի նման էր:

— Գրատախտակին նկարածիս նման է,—ակամա բերանից թռցրեց նա և գողության վրա բռնվածի պես շփոթվեց:

Իսկ ուսուցիչը աշակերտի ճակատը համբուրելով, ասաց.

— Տղա՛ս, Հայաստանի տեսությա՜նն արժանանաս...

# ԵՐԿԻՐ ԵՆ ՎԵՐԱԴԱՌՆԱԼՈՒ ԵՐԵՔԸ

(Գիտա-ֆանտաստիկ պատմվածք)

ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

— Չեմ կարող:

Սաղավարտի հաստ ապակու տակից ես միայն նրա շրթունքի շարժումը տեսա: Ձայն չէր լսվում: Միայն ենթադրեցի, որ Մարիո Մանտովանին ասաց.

— Չեմ կարող:—Հետո փակեց աչքերն ու խընդրեց.—գնացեք:

Նայեցի շուրջս:

Ոչինչ չէր փոխվել: Նարնջագույն ամպերը անշարժ կախված էին մեր գլխավերը: Երբեմն լսվում էին շանթերի հեռավոր ու խուլ ճայթյուններ: Իսկ մոխրագույն զանգվածը շարունակում էր դանդաղ, բայց համառորեն սողալ առաջ: Ի՞նչ էր ուզում նա: Այդ շարժուն շերտը, որ մոխրագույն էր՝ կարմրավուն բծերով, որ երբեմն ալեկոծվում էր, որ մեր վայրէջքից անմիջապես հետո շարունակ հետևում էր մեզ: Նա նման էր հրաբխային լավայի: Միայն թե ավելի խելացի: Ուզում էր մեզ շրջապատել: Եվ եթե Մարիոն չկարողանար ոտքի կանգնել, շարժուն զանգվածը կծածկեր մեզ:

— Ժամանակ ենք վատնում, — ասաց Օրլիկ Թադևոսը: — Բարձրացրու, միասին կտանենք:

Մարիոն փորձեց հակաճառել: Խնդրում էր, որ իրեն հանգիստ թողնենք: Հիշեցնում էր, որ եթե մեր արշավը տապալվի, ինչպես դա պատահեց Օզրա Քենիրոյի խմբի հետ, ապա մոլորակն ուսումնասիրելու գործը նորից կհետաձգվի:

... Երկուսով գրկեցինք Մարիոյին ու շարունակեցինք քայլել: Մարիոն ծանր էր:

Երբեմն նայում էի ետ: Մեր ու մոխրագույն զանգվածի մեջ ընկած տարածությունը ավելացել էր: Բայց նա շարունակում էր համառորեն սողալ մեր հետքերով:

Նա մեզ արդեն իրենն էր համարում: Ու չէր շտապում: Սողում էր՝ տարածված ամբողջ հարթավայրով մեկ: Առաջ էր նետում իր ելուստները, ալեկոծվում էր ու անշտապ սողում:

— Միայն թե շուտ հասնենք աստղաթիռին. Օզրա Քենիրոյի խումբը ոչնչացրել է նա, զանգվածը, — հևալով ասացի ես:

— Այո, — պատասխանեց Օրլիկ Թադևոսը:

Գիտեի, որ իմ ասածը նորություն չէ: Բայց նարնջագույն ամպերը, սողացող զանգվածն ու լռությունը ստիպում էին խոսել ամենահիմար բաների մասին:

— Աստղաթիռին հասնելուն պես, պետք է թռչենք:

— Այո,— պատասխանեց Օրլիկ Թադևոսը:

— Այս զանգվածից նմուշ չվերցնե՞նք:

Օրլիկ Թադևոսը չպատասխանեց:

— Այս մոլորակի միակ կենդանի բնակիչը նա է: Տես, ինչպես է ընկել մեր հետևից:

— Ծանր է, — ասաց Օրլիկը:

— Հանգստանանք, — առաջարկեցի ես:

— Ժամանակ չկա:

Շարունակեցինք քայլել: Չէինք խոսում: Միայն Մարիոն էր երբեմն շարժում շուրթերը՝ «Թողեք ինձ»:

... Երեկոյան, երբ նարնջագույն ամպերը ստացան ավելի խիստ երանգ, հորիզոնի վրա երևաց աստղաթիռը:

Մոխրագույն զանգվածը շատ հետ էր մնացել: Չէինք տեսնում նրա շարժուն ելուստները և ալեկոծվող մակերեսը: Բայց համոզված էինք, որ նա շարունակում է սողալ մեր հետքերով: Վայրէջք կատարելու օրից նա հետևում էր մեզ: Կարողացավ օղակման մեջ առնել Մարիոյին: Եվ եթե մի փոքր դանդաղեինք, Մարիո Մանտովանին այլևս չէր լինի...

— Ինչու՞ կանգնեցիր, — հարցրեցի Օրլիկ Թադևոսին:

— Մեկը մոտենում է:

— Զանգվա՞ծը:

— Ոչ: Մարդ:

Մարիո Մանտովանիին դրեցինք գետնին: Նարնջագույն ամպերի խիստ երանգները դարձել էին գորշ: Եվ այդ գորշության վրա, մի քանի քայլ հեռու, տեսանք մեկի սիլուետը: Մարդը մոտենում էր մեզ:

— Նա զրահազգեստով է, — ասացի ես:

... Անծանոթը մոտեցավ: Լուռ զննեց մեզ: Հետո նայեց հեռուն ու ասաց.

— Զանգվածը մոտենում է: Շտապեք: Աստղաթիռը հեռու չէ: Աստղաթիռում ապահով է:

Մենք նորից բարձրացրինք Մարիոյին ու քայլեցինք: Մարդը գալիս էր մեզ հետ:

— Դու Օզրա Քենիրոյի արշավախմբի՞ց ես, — հարցրեց Թադևոսը:

— Այո: Արշավախմբից մնացել եմ միայն ես: Մյուսներին կլանեց մոխրագույն զանգվածը: Հիանալի տեսարան էր:

— Ի՞նչ:

Մարդը չլսելու տվեց իմ հարցը:

— Չե՞ս օգնի, — խնդրեց Թադևոսը: — Երեքով ավելի հեշտ կտանենք Մարիոյին:

Մարդը նույնիսկ ուշադրություն չդարձրեց Օրլիկի ասածի վրա: Նա քայլում էր մեզնից քիչ հեռու:

— Դու ինչպե՞ս փրկվեցիր,— հարցրեցի ես։

— Խաբում եմ նրան։ Արդեն չորս ու կես տարի է, զանգվածը հետևում է ինձ։ Բայց չի կարողանում հասնել։ Ես խաբում եմ նրան։

Ուզեցի հարցնել, թե նա ինչպե՞ս է իր գլուխը պահել այդ չորս ու կես տարիների ընթացքում։ Բայց մենք արդեն հասել էինք աստղաթիռին։

... Խցիկում նստած նայում էինք դուրս։ Մոխրագույն զանգվածը շրջապատել էր աստղաթիռը։

— Նա սնվում է մոլիբդենով,— ասաց մեր նոր ծանոթը։— Դրա համար էլ ընկնում է միայն զրահազգեստների հետևից։ Ոչ թե մարդիկ են նրան հրապուրում, այլ զրահազգեստները։ Այսինքն՝ նրանց մեջ պարունակվող մոլիբդենը։

Մարիոն թույլ տնքաց։

Իսկ ես ու Օրլիկ Թադեուսը լուռ իրար նայեցինք։

Դու պետք է վերջացնես աշխատությունդ։ Ես եմ մնալու Զվինենը։

— Ամեն դեպքում ես պետք է վերադառնամ Երկիր,— ասաց մեր նոր ծանոթը։— Իսկ դուք կարող եք վիճակ գցել, թե ձեզանից ովքե՞ր պետք է գան ինձ հետ։

— Կմնամ ես,— հևալով ասաց Մարիոն։— Իմ վերջն է... այստեղ է։ Ես... չեմ կարող, Գնացեք դուք... երեքով...

— Ես ամեն դեպքում պետք է վերադառնամ Երկիր,— ասաց մեր նոր ծանոթը։— Իսկ դուք կարող եք վիճակ գցել։

— Մնալու եմ ես։ Զվինե՛նը,— գոչեցի ես։

— Քեզ հարսնացուդ է սպասում։ Դու պետք է գնաս,— ասաց Օրլիկ Թադեուսը։

— Ես ամեն դեպքում պետք է վերադառնամ Երկիր,— ասաց մեր նոր ծանոթը։— Վաղը վիճակ



Հետո Թադեուսը գլուխը շրջեց դուրս։ Ապա լսեցի նրա ձայնը.

— Առավոտյան մեկնելու ենք։ Անպայման։

Դա հասկանալի էր։ Բայց մենք չորսով էինք. Իսկ աստղաթիռը կարող էր տանել միայն երեքին։ Վերջապես, մեր ճանապարհորդությունը ոչ թե ժամերի, այլ տարիների հարց էր։

— Կմեկնենք երեքով։ Ես կմնամ,— ասաց Օրլիկ Թադեուսը։

— Մարիոն հիվանդ է։ Նա անպայման պետք է գնա,— ասացի ես։— Քեզ էլ է անհրաժեշտ գնալ։

կգցեք... Ձեզնից երկուսը կմեկնեն ինձ հետ։ Ես անպայման պետք է գնամ։

... Որոշեցինք այլևս չվիճել։

Պառկեցինք առանց զրահազգեստները հանելու։ Շատ էինք հոգնել։ Չկարողացա քնել։ Մտածում էի։ Երբեմն հուզմունքից շնչահեղձ էի լինում։ Ես պատրաստ էի այս մոլորակի վրա մնալու։ Բայց ինչու՞ էր մեր նոր ծանոթը անընդհատ կրկնում, որ ինքն է գնալու... Ինչու՞ է նա առաջինը իր մասին մտածում։

Թադեուսն էլ էր անհանգիստ։ Նա պտտվում էր

*տենում ու չէր կարողանում քնել: Վերջապես կիսաձայն ասաց.*

*— Մեղադրել չի կարելի... Չորս ու կես տարի: Այն էլ բոլորովին մենակ:*

*— Այդպիսի մարդ առաջին անգամն եմ տեսնում,— ասացի ես:*

*— Նա մարդ չէ,— տնքալով նկատեց Մարիոն: — Ազնիվ խոսք: Համաձայնեք, որ ես մնամ... Իմ վերջը մոտ է... Բայց նա մարդ չի:*

*Լռեցինք:*

*Չէի կարողանում քնել: Ականջիս տակ զնգում էր Մարիո Մանտովանիի ձայնը. «ՆԱ ՄԱՐԴ ՉԻ»... Բայց ինչու՞ դա չասել հենց իրեն... մեր նոր ծանոթին:*

*Մոտեցա: Ցնցեցի: Հետո փորձեցի բարձրացնել նրա գլուխը: Ծանր էր: Շատ ծանր...*

*Վառեցի գրպանի լապտերը: Լույսի նեղ փունջը սահեց նրա դեմքի վրայով: Ես ավելի թեքվեցի նրա վրա:*

*— Օրլիկ:*

*Թադեուսը վեր թռավ:*

*— Օրլիկ... Սա Օգրա Բենիրոյի արշավախմբի ռոբոտներից է,— գոչեցի ես:*

* * *

*Առավոտյան վիճակ գցելու հարկ չեղավ: Ռոբոտի գլուխը վերցրեցինք մեզ հետ: Դա ամենից կարևորն էր: Չէ՞ որ այնտեղ էին գրանցվել չորս ու կես տարվա դիտումների արդյունքները... Իսկ մարմինը դուրս նետեցինք:*

*Մոխրագույն զանգվածը անմիջապես շրջապատեց մետաղյա խուրձն ու պլոկոծվեց...*



*Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ*



# ԵՍԸ

*ԼԵՎ ՍՈՐՈԿԻՆ*

Միշան վերջին օրերն է մանկապարտեզ հաճախում: Աշնանը նա առաջին դասարանցի կդառնա: Միշան արդեն իրեն համարում է ինքնուրույն մարդ: Տուն է գալիս ու բղավում.

— Ես այսօր լավ երգեցի (չնայած, որ լավ էր երգում ամբողջ խումբը):

— Ես այսօր բակում ավազե բլուր կառուցեցի (չնայած, որ բլրակը պատրաստել էին ընկերներով):

Իսկ փոքր քրոջը, Լենային, որը նոր էր սկսել երկար նախադասություններ արտասանել, Միշան հաճախ ասում էր.

— Ես մեր բակի ամենաուժեղն եմ,

— Է՜խ, դու, անգրագետ, ե՛ս արդեն կարող եմ տառը տառ գրել:

Եվ կամ նստում էր, նստում ու հանկարծ բղավում.

— Մի՛ աղմկիր, ես պարապում եմ:

— Ես քեզ արգելում եմ, ես մեծն եմ:

Մի անգամ նա տուն եկավ, իսկ Լենան ուրախ-ուրախ բացականչեց.

— Եսը եկա՜վ:

Միշան սկզբում ուշադրություն չդարձրեց, իսկ հետո լսեց, թե ինչպես Լենան ասաց.

— Այսօր մեր Եսը չի գնա զբոսնելու:

— Ինչպե՞ս է իմ անունը,— հարցրեց Միշան:

— Քո անունը Ես է,— վստահորեն պատասխանեց Լենան:

— Իմ անունը Միշա է:

— Ո՛չ, քո անունը Ես է,— համառեց Լենան:

Միշայի տրամադրությունը փչացավ: Իսկ մայրիկն ասաց.

— Մտածի՛ր, թե ինչո՞ւ նույնիսկ քույրդ քեզ Ես է անվանում:

— Ես... ասաց Միշան և հանկարծ լռեց:

*Թարգմ. Դ. ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ*

# Սուրիկի զվարճախոսություններից

### ԱՆՀՆԱՐԻՆ ԱՌԱՋԱՐԿ

Հայրը ասաց.

— Սուրի՛կ, այնպես արա, որ քեզ միշտ ասեմ՝ իմ խելոք բալիկ:

— Իսկ ես չեմ ուզում միշտ փոքրիկ մնալ,— պատասխանեց Սուրիկը:

### ՏՈՄՍԱՎԱՃԱՌԻ ԱՌԱՋԱՐԿՈՎ

Սուրիկն ու Վարդանիկը բարձրացան ավտոբուս. Տոմսավաճառը անընդհատ կրկնում էր.

— Առջևի դռնից բարձրացողնե՛ր, տոմսա՛կ վերցրեք:

Վարդանիկը փորձեց տոմսակ վերցնել:

Սուրիկը դարձավ նրան.

— Ինչո՞ւ ես վերցնում, չէ՞ որ մենք հետևի դռնից ենք բարձրացել:

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՄԵԼՔՈՆՅԱՆ

### ՃԱՇԻ ԺԱՄԱՆԱԿ

— Այդ կեղտոտ ձեռքերով ինչպե՞ս ես ճաշի նստել,— ասաց մայրը:

— Ի՞նչ անեմ, մայրիկ, ուրիշը չունեմ,— պատասխանեց Սուրիկը:

### ԻՆՉՈ՞Ւ

— Հայրի՛կ, եթե մարդը կապիկից է առաջացել, ապա ինչո՞ւ մինչև այսօր էլ կապիկներ կան,— հարցրեց Սուրիկը:

— Որովհետև չար երեխաներին տեսնելով, նրանք գերադասում են կապիկ մնալ:

ԳՈՒՐԳԵՆ ԴԱԴՈՒՄՅԱՆ

### ՁԵՌՔԸ

Սուրիկը ուսուցչի տված հարցերի պատասխանը իմանար, թե չիմանար, ձեռք էր բարձրացնում:

Ուսուցիչն էլ կարծելով, որ նա գիտի, մեծ մասամբ չէր հարցնում, իսկ երբ մի օր էլ հարցրեց, Սուրիկը հանգիստ ասաց.

— Թույլ կտա՞ք գնամ ջուր խմեմ:

ՀԵՆՐԻ ԲԱԴԱԼՅԱՆ.



## ԱՐԵՎԱԾԱՂԻԿՆ ՈՒ ՏՂԱՆ

ԱԶԱՏ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

Արմատներդ հողում թաղած,
Դեղին պսակ գլխիդ առած,
Ջուր ես խմում պաղ պուրակից,
Լույս ես առնում արեգակից:
Իմ լա՞վ ծաղիկ, ասա՛, ինչու՞
Ինձ չես սիրում, չես սիրում դու:
Երբ մտնում եմ ես մեր այգին,
Չես էլ նայում դու իմ դեմքին:
Միտք ես անում ինքդ քո մեջ,
Արեգակին նայում անվերջ:
— Գիտես ինչու՞... Դե՛, լսիր ինձ,
Նեղացած եմ ես քեզանից.
Հատիկներս ես դու միշտ վերցնում,
Ե՛վ փողոցում, և՛ դպրոցում
Անգործ, անբան ման ես գալիս,
Չրթում ու շաղ ես տալիս,
Կեղտոտում ես թե՛ բակ, թե՛ մայթ:
Դրա համար ամեն մի մարդ
Փնթի, կեղտոտ է ինձ կարծում,
Իմ անունն էլ քեզ հետ գցում:
Մինչդեռ մարդկանց, ա՛յ դու անփույթ
Տալիս եմ ես այնքա՞ն օգուտ:



Նկ. ԱՐՏՈ ՉԱԳՄԱՔՋՅԱՆԻ




Ա. ՇՄԱՆԿԵՎԻՉ

Նկ. ՊԵՏՐՈՍ ՄԱԼԱՅԱՆԻ

Որպեսզի միանգամից վերջ տրվեին ամեն տեսակ վեճերին, Տիգրանի հայրն ասաց.

— Չես ամաչո՞ւմ, դու հանգստյան օր չունե՞ս: Ունես: Ես էլ ունեմ: Իսկ ինչո՞ւ մայրիկը մի երեկո չպետք է հանգստանա: Այսօր դու և Անահիտը տանը կմնաք: Ահա քեզ տնային հանձնարարություն, հասկացա՞ր:

— Դե, ես ոչինչ չեմ ասում... Գնացե՛ք...— համարյա շշուկով պատասխանեց Տիգրանը,— միայն թե Անահիտին ասա, որ գլխիս հարսանիք չսարքի:

— Նրան մի բանով զբաղեցրու, լաց չի լինի,— ավելացրեց մայրիկը, հագնելով վերարկուն:

Անահիտին հեշտ չէր խաբել: Նա սենյակի մի անկյունից դուրս թռավ ու, երբ տեսավ մորը վերարկուն հագին, սկսեց բարձրաձայն լաց լինել: Հարկ եղավ հոր միջամտությունը:

— Լաց մի՛ լինի,—խիստ ձայնով ասաց նա,— սա ի՞նչ բան է: Այսօր մայրիկի հանգստյան օրն է: Մենք տեղ ենք գնում: Լաց մի՛ լինի, Տիգրանը տանն է մնում, նա քեզ հետ կխաղա:

Մինչև Անահիտը աչքերը թարթելով կորոշեր լաց լինե՞լ, թե՞ ոչ, ծնողները սենյակից դուրս եկան: Տիգրանը փոքրիկ քրոջ հետ միայնակ մընաց: Անահիտը որոշեց լաց լինել և նա ամենաբարձր նոտայից սկսեց: Տիգրանի դեմքը կնճռոտվեց, ասես թե ատամի ցավը բռնեց:

— Ի՞նչ ես ձայնդ գլուխդ գցել, երբ նրանք արդեն գնացել են: Շատ ես ուշացել... իսկական փորձանք ես գլխիս: Այժմ լացդ ավելորդ է, նըրանք թատրոն գնացին... իսկ ես քո պատճառով տանն եմ մնալու:

Երբ Անահիտն իմացավ, որ հայրիկն ու մայրիկը թատրոն են գնացել, վրդովվեց, նա արդեն հասկանում է, թե ինչ բան է թատրոնը:

— Ես էլ եմ ուզում թատրոն գնալ,—լացակումած ասաց Անահիտը:

— Սունդուկյանի՞ անվան թատրոն, թե՞ Պատանի հանդիսատեսի,—ծիծաղեց Տիգրանը:

Անահիտը մի պահ մտածեց, թե ո՛ր թատրոնն է, իրոք, լավ:

— Սունդուկյանի անվան թատրոնը,- պատասխանեց նա:

Շքամուտքից լսվեց էլեկտրական զանգի ձայնը: Զանգ տվողը հարևանի տղան էր, Հարությունը: Նա եկել էր Տիգրանին դուրս կանչելու:

— Չեմ կարող գալ...— տխուր ձայնով բացատրեց Տիգրանը,— այսօր մայրիկի հանգստյան օրն է: Նա հայրիկի հետ թատրոն է գնացել, իսկ

ինձ էլ, տեսնում ես, տնային հանձնարարություն է տվել: Ի՞նչ կարող եմ անել: Քո գործը լավ է, ախպեր, քույր չունես:

— Ինչո՞ւ ես լաց լինում,— հարցրեց Հարությունն ու նայեց Անահիտին:

— Թատրոն է ուզում գնալ,— բացատրեց Տիգրանը:

— Այո, Սունդուկյանի անվան թատրոն,— լրացրեց Անահիտը:

Հարությունը զարմանալի հնարամիտ տղա էր:

— Թատրո՞ն է ուզում գնալ: Լավ, ես հիմա ցույց կտամ մի հրաշալի ներկայացում,— ասաց Հարությունն ու վայրկենապես գլխարկն ու վերարկուն մի կողմ գցեց, փաթաթվելով սեղանի թավշյա կարմիր սփռոցով, թռավ սեղանի վրա: Նա, մազերը խառնելով, ահեղ ձայնով սկսեց երգել.

Լաց մի՛ լինի, որդիս,
Լաց մի՛ լինի իզուր:

Փոքրիկ Անահիտը կծկվեց անկյունում, իսկ Հարությունն սկսեց ավելի ուժեղ ձայնով երգել.

Ինձ ոչ ոք չի սիրում,
Մարդիկ ինձ են անիծում:

— Հը, ինչպե՞ս է,— հարցրեց Հարությունը:

— Շատ լավ է,— ծիծաղեց Տիգրանը,— տե՛ս, ինչպես է Անահիտը փըշաքաղվել:

— Չէիր կարող զբաղեցնել, ա՜խ, դու, մե՜ծ եղբայր...

— Էլի՛, էլի՛, էլի եմ ուզում,— խնդրեց Անահիտը,— կարո՞ղ ես մի ոտքով ցատկոտել...

— Պա՛հ մի ոտքով... ի՞նչ դժվար բան ես ասում, ես կարող եմ, նույնիսկ, մի ձեռքով ցատկոտել: Ալե հո՛պ:

Հարությունը ձեռքի վրա կանգնեց, ոտքերը վեր բարձրացրած, սկսեց սեղանի շուրջը պտտվել: Անահիտը հիացմունքից ճչաց:

— Գիտե՞ս ինչ,— ոգևորվեց Հարությունը,— քանի որ քեզ տնային հանձնարարություն են տվել, արի թատրոն խաղանք: Անահիտը հանդիսատեսը կլինի, իսկ ես ու դու՝ ներկայացում ցույց տվողը: Համաձա՞յն ես: Լավ: Սեղանը մի կողմ տար, աթոռները հավաքիր ու հատակին գորգ փռիր: Հարկավոր է տնային հանձնարարությունը լավ կատարել:

Ներկայացումն սկսվեց...

Երբ հայրիկն ու մայրիկը տուն վերադարձան, զարմանքից քար կտրեցին: Ամբողջ սենյակը տակնուվրա էր արված: Գլխավոր դերասանն արդեն տուն էր գնացել: Մյուս դերասանը՝ մանուշակագույն փառահեղ բեղով, մայրիկի գլխարկն ու հայրիկի որսորդական կոշիկները հագին, խաղաղ քուն էր մտել բազմոցի վրա: Իսկ միակ հանդիսատեսը՝ Անահիտը, գլուխը եղբոր ուսին դրած, երազում ժպտում էր:

Երբ մայրիկն սկսեց Անահիտի շորերը հանել, աղջիկը մի պահ աչքերը բացեց:

— Մայրի՛կ, քո հանգստյան օրերին ուր ուզում ես գնա,— ասաց Անահիտը քնաթաթախ:— Ինչո՞ւ Հարությունին ոչ ոք չի սիրում, ինչո՞ւ մարդիկ նրան անիծում են: Ես նրան շատ եմ սիրում, երբ նա երկու ձեռքերի վրա կանգնած քայլում է: Մեր Տիգրանն էլ է սիրում: Տանն իսկական ներկայացում էր:

Թե ինչ պատասխանեց մայրիկը, Անահիտը չկարողացավ լսել, բայց փոխարենը նա պարզ լսեց, թե ինչ ասաց կոշկավոր կատուն:

— Նրանք քեզ սիրում են, քնի՛ր, աղջիկս, ես իզուր անհանգստացա:

Փոխադրեց՝ ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆ



# ՆՈՐ ՍՄՈԼԱՆԴԻԱՅԻ ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒՄԸ

ՊՐՈՖԵՍՈՐ ԼՅԱԲԵՐ ՀԱՐՄՆՅԱԿ

Նկ. ԱՐՏՈ ՉԱՔՄԱՔՉՅԱՆԻ

*Միջատաբաններից որևէ մեկը հազիվ թե երբևիցե հանդիպած լիներ այսչափ անհավատալի, ֆանտաստիկ բաների։ Այստեղ հանդիպում էին ագռավի մեծության ճանճեր ու բզեզներ, շան բոթի չափ ուտիճներ ու մրջյուններ։ Իսկ մեր առաջին որսը... Մինչ Ումպը ընկել էր հսկայական թրթուրի հետևից, ես քաշում էի մի արարածի պոչից, որին սկզբում օձի տեղ էի դրել, բայց... պարզվեց, որ անձրևաորդ է։ Ումպը քարշ էր տալիս ոտքերը կապած մի լվի, որի երկարությունը գլխից մինչև պոչի ծայրը կազմում էր վաթսունչորս սանտիմետր։ Սատանան տանի, ես հեքիաթային լիլիպուտ էի զգում ինձ։ Մեր հետագա ճանապարհն այդ սարահարթով առանց արկածների չանցավ։ Օրինակ՝ եթե չհաներ բրաունինգս և դիպուկ կրակոցներով չտապալեի հսկայական կարիճին, որը փակել էր մեր ճանապարհը և սպառնալի թափահարում էր թունավոր պոչը, վախենում եմ, որ այս գիրքը չգրվեր։*

*Մյուս օրը վաղ առավոտյան մի հսկայական ձու գտանք։ Այդ գյուտը ինձ շատ ուրախացրեց։ Սկզբում ես փորձեցի գրչահատով ծակել կճեպը, բայց այդ ինձ չհաջողվեց, որովհետև կեղևը շատ հաստ էր։ Ումպի հետ սկսեցինք մահակներով թակել։ Վերջապես կճեպը ջարդվեց, նրա հետ ջարդվեցին և իմ երազանքները հյութալի ձվածեղի մասին։ Ավա՜ղ, ձվի պարունակությունը օձի մի սաղմ էր։ Լավ էր, որ չհանդիպեցինք դրա ծնողներին։*

*Կես ժամ հետո մտնելով արմավենիների նոսր անտառը, հանդիպեցինք զոհին տապալող արյունարբու մի հսկա սարդի։ Պատրաստ պահելով բրաունինգը, և տհաճ զգացումը սրտումս, պատկառելի հեռավորության վրա անցանք նրանից։*

———

Սկիզբը տե՛ս. «Պիոներ» № 11։

## ՎԵՑԵՐՈՐԴ ԳԼՈՒԽ

## ՀԱՆԴԻՊՈՒՄ ՏՈՒՖՖ-ՏՈՒՖՖ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԵՏ

*Երեք օր տևեց մեր ճանապարհորդությունը Նոր Սմոլանդիայի սարահարթերում, երեք օր, որոնք պետք է հիշեմ սարսափի հետ խառնված հիացմունքի զգացումով։ Մենք հրաշքով կենդանի մնացինք։*

*Երրորդ օրը երեկոյան Ումպը հայտարարեց.*

*— Տուֆֆ-տուֆֆները հեռու չեն։*

*Այդ ժողովրդի գոյությանը ես այլևս չէի կասկածում։ Ոչինչ այլևս ինձ չէր կարող զարմացնել։ Ես միայն ներքուստ հարցնում էի, թե ինչ են իրենցից ներկայացնում այդ տուֆֆ-տուֆֆները։*

*Երբ հասանք լեռան կատարը, հովտում նկատեցի մի փոքր գյուղ, մոտավորապես մի տասնյակ տներով։ Դրանք շատ նման էին նեգրական խրճիթ-*



ների, որոնց ես հանդիպել եմ Աֆրիկայի մի քանի մարզերում։ Խրճիթներից մեկը մի փոքր հեռու էր ընկած և մյուսներից տարբերվում էր իր չափերով։

— Այնտեղ ապրում է թագավորը,— ասաց Ումպը։

Մենք սկսեցինք իջնել։ Առաջին հայացքից գյուղը մեռած էր թվում։ Բայց դա միայն թվում էր։ Աստված իմ, քիչ էր մնում գետնին նստեի այդ տարօրինակ արարածների տեսքից, որոնք լեզուները հանած, ձախ ձեռքում մայիսյան բզեզի սպիտակ ու յուղոտ թրթուրները բռնած, սիրալիր դեմքով մոտենում էին մեզ։ Այդ էակները հաստ միջատներ էին հիշեցնում, բայց մարդու գլուխներով։

— Տուֆիխտուֆի, տուֆֆխտուֆի, բլախա տատա,— ողջունեցին նրանք մեզ, և ես հասկացա, թե ինչու էր Ումպը նրանց տուֆի-տուֆի կոչում։

Տուֆի-տուֆիներով շրջապատված՝ մենք շարժվեցինք դեպի թագավորի խրճիթը, որի դռան առաջ նիզակներով կանգնած էին երեք ժամապահ։ «Օհո՜,— մտածեցի ես.— տուֆի-տուֆիներն այնքան էլ խաղաղասեր չեն երևում, ինչպես Ումպն էր նկարագրում, մեկ էլ տեսար...» Սակայն տատանումները մի կողմ թողնելով, ավելի արագ սկսեցի քայլել։

Ահա և թագավորի տունը։

— Ինձ կոչում են պրոֆեսոր Հարսնյակ,— ներկայացա ես։ Ապա լեզուս հանելով ողջունեցի ու մեկնեցի հոտավետ սիգարը։

— Տուֆիխտուֆի, տուֆիխտուֆի, բլախա տատա,— պատասխանեց թագավորը թանձր բասով։

Թագուհին և թագաժառանգուհին շփոթված ծիծաղում էին բթի տակ, իսկ փոքրիկ թագաժառանգը ինչ-որ անհասկանալի բան էր փնթփնթում։

Թագավորական ընտանիքի անդամների գլխին սափրվելու վրձին հիշեցնող թագեր կային։ Մեզ ընդունեցին սրտաբաց և սկսեցին առատորեն հյուրասիրել, սակայն ոչ այնպիսի կերակուրներով, որոնց ես եմ սովոր։ Ճանապարհորդը գիտե, որ սեփական օրենքներով ուրիշի տաճարը չի մտնի։

Հյուրասիրությունը բաղկացած էր պարարտ ուտիճներից և գիշաճճիներից, եփված և համեմված մեր սամիթը հիշեցնող ինչ-որ բանով։

Տարօրինակ հյուրասիրություն։

## ՅՈԹԵՐՈՐԴ ԳԼՈՒԽ

## ՎՏԱՆԳԱՎՈՐ ՈՐՍ



Տուֆի-տուֆիների գյուղում իմ անցկացրած յուրաքանչյուր օրը հետաքրքիր և նոր բան էր տալիս գիտությանը։ Դեռ մի շաբաթ չէր անցել, ես արդեն սովորել էի տուֆի-տուֆիերենի ամենագործածական դարձվածքներն ու արտահայտությունները և կարող էի բավականին լավ բացատրվել։ Ես պատմեցի Ֆուֆի Յոթերորդին (այդպես էր կոչվում թագավորը) ճանապարհորդական հարուստ կյանքիս միջադեպերը։ Պատմեցի նաև այն մասին, թե ինչպես հայտնագործեցի իր երկիրը։ Սակայն բարձրավանդակի անցման նկարագիրը նրա վրա ոչ մի տպավորություն չթողեց։ Լսելով իմ պատմությունները մեզ հանդիպած հսկայական միջատների մասին, նա միայն շրթունքները լպստեց և ասաց.

— Հը՜մմ, հը՜մմ, որքա՜ն համեղ բաներ։ Բայց, սիրելի Հարսնյակ, հավատացեք, մեր երկրում էլ տհաճ կենդանիներ կան։ Սպասեցեք ես ձեզ հիմա մի բան ցույց կտամ։

Այս ասելով Ֆուֆի Յոթերորդը ցույց տվեց... մի մետրանոց ատամ։ Սատանան տանի, իսկ այս ատամների տերը ինչպիսին կլինի։

— Ես պետք է տեսնեմ այդ գազանին,— բացականչեցի ես։

— Ո՛չ, ո՛չ, դա շատ վտանգավոր է. նա խժռեց Ֆուֆի Վեցերորդ թագավորին և արքայական գվարդիայի հիսունչորս զինվորի,— պատասխանեց նա։ Բայց զգալով, որ անկարող է ինձ կանգնեցնել, ասաց.— այդ դեպքում ես քեզ հետ զինված պահակախումբ կուղարկեմ։

Նա փչեց ռազմական սրինգը և կանչեց գյուղի բոլոր մարտունակ տղամարդկանց։

Վաղ առավոտյան ես ճանապարհ ընկա պահակախմբի հետ։ Տուֆի-տուֆիները այնքան էլ գոհ չէին թագավորի հանձնարարությունից։ Երկու օր անընդհատ մենք քայլում էինք ամայի լեռներով։ Երրորդ օրը առավոտյան անսպասելիորեն, լճի մոտ տեսանք գազանին՝ ծարավը հագեցնելիս։ Դա իրենից ներկայացնում էր արջին և ռնգեղջյուրին մոտիկ մի բան, իսկ բարձրությունը մի մեծ տան չափ կլիներ։

Հրեշն իսկույն մեր հոտն առավ։ Նա շուռ տվեց

գլուխը, իսկ մեջքի մազերը բիզ-բիզ կանգնեցին։ Այդքանը բավական էր, որպեսզի տուֆի-տուֆիները և Ումպը փախուստի դիմեին։ Իսկ ես հանգիստ հանեցի պայուսակս, որտեղ պահում եմ ամեն տեսակի առարկաներ։ Մինչ հրեշը խռպոտ ռռնոցով, դանդաղ կքայլեր իմ կողմը, հանեցի դինամիտը, սիգարով վառեցի բիկֆորդյան լարը և... հենց այն վայրկյանին, երբ գազանը պատրաստվում էր կուլ տալ ինձ, դինամիտը շպրտեցի ուղիղ նրա երախը։ Մի խլացուցիչ պայթյուն տեղի ունեցավ և հրեշը ցրված ուղեղով թավալվեց գետնին. դինամիտի պայթյունին հետևեց տուֆի-տուֆիների ուրախության պոռթկումը։ Նրանց երդվյալ թշնամին սպանված էր։

Նրանք ցատկոտում էին, ծիծաղում, պարում, ոռնում, գոռգոռում։ Ես ակամայից սկսեցի հպարտանալ իմ քաջագործությամբ։

Կա՞ արդյոք մի որսորդ, որ կարողանա այսպիսի հաջողությամբ պարծենալ։



## ՈՒԹԵՐՈՐԴ ԳԼՈՒԽ

## ՊՈՉԱՎՈՐ ՄԱՐԴԱԿԵՐՆԵՐԻ ԳԵՐԻՆ

Հանկարծ մտքիս պարզ ընթացքը կտրվեց։ Տուֆի-տուֆիներից մեկի սարսափի ճիչը ինձ ստիպեց ետ դարձնել գլուխս։ Աստվա՜ծ իմ, աչքերիս առջև ներկայացավ տուֆի-տուֆիներից բոլորովին տարբեր, նիզակներով և վահաններով զինված վայրենիների արագ մոտեցող ամբոխը։ Սրանց արտաքինը ոչ մի լավ բան չէր խոստանում։ Ումպը և իմ պահակախումբը սարսափի աղաղակներով փախուստի դիմեցին։ Ես տեղումս մնացի մենակ։ Մարդաբանական դիտումների կիրքը ավելի ուժեղ էր։

Բրաունինգս հանելով, ես սպասում էի, թե ինչ է լինելու հետո՞։ Սակայն համոզվելով, որ այդպիսի գերազանց ուժերի դեմ պայքարելն անօգուտ է, ես չկրակեցի։ Սմոլանդացիների այդ նոր և հետաքրքիր տեսակի պատճառով ես մոռացել էի վտանգի մասին։

Վայրենիները շրջապատեցին ինձ և շան հաչոցի նման ձայներ հանելով սուր, հավանաբար թունավոր, նիզակները ուղղեցին վրաս։

— Պարոնա՛յք,— փորձեցի սկզբում Ումպի լեզվով բացատրվել նրանց հետ, իսկ հետո տուֆի-տուֆիական բարբառով,— ես վերին աստիճանի զարմացած եմ այն բանից, թե ինչպես եք դուք վերաբերվում գիտությունների ակադեմիայի անդամի՝ խաղաղ ճանապարհորդի հետ։

Որպես պատասխան լսվեց սպառնալի մի մռընչոց։ Դրանից հետո, բողոքներիս ուշադրություն չդարձնելով, ձեռքերս ու ոտքերս կապեցին արմավենու ճողին, ճիշտ այնպես, ինչպես որսորդները վարազին են կապում և վայրի աղաղակների նվագակցության տակ քարշ տվին ինչ-որ տեղ։ Հաճախ փորս քսվում էր գետնին։

Ինձ թվաց, թե մեծ անսահմանություն անցավ, մինչև հասանք խոր քարայրին՝ վայրենիների բնակատեղիին, որի մուտքի մոտ կանգնած էր տոտեմի սյունը։ Ինձ կապեցին այդ սյունին և սկսեցին պատրաստություններ տեսնել ինձ եփելու համար։ «Վարե՛ք Հարոնյակ,— մռայլ դարձա ինքս ինձ,— դու ընկել ես մարդակերների ձեռքը. քեզ կուտեն»։

Միևնույն ժամանակ Ումպը և տուֆի-տուֆիները խորհրդակցում են, թե ինչպես ազատեն ինձ։ Տուֆի-տուֆիները շատ վախեցած էին և իրենց կորցրած, բայց Ումպի գլխում մի փայլուն միտք է ծագում...

Սակայն գործողություններից առաջ չեմ անցնի։

Մարդակերներն ինձ տեղավորեցին մի մեծ կաթսայում և նիզակները ցնցելով, վրաս քաղցած հայացքներ նետելով ու վայրենի ձայներ հանելով սկսեցին շուրջպար կազմել։ Ես վաղուց կարոտել էի տաք վաննայի, սակայն ոչ այս տեսակի։ Ջուրն ավելի ու ավելի էր տաքանում։ Երբ ջերմաստիճանն արդեն անտանելի էր դառնալ, հանկարծ մի ծանոթ ձայն լսեցի։ Ետ դարձրի գլուխս և ժայռի վրա տեսա Ումպին։

— Բո՜ւն, տե՛ր, բո՜ւն,— գոռաց նա և ինչ-որ բան շպրտեց։

Ահա իմ փոքրիկ «ստվածը» անհրաժեշտ պահին նորից օգնության եկավ։ Հազիվ էր ծածկոցը բարձրացել և «սատանան» դուրս թռել, երբ մարդակերները փախուստի դիմեցին։ Իսկ հետո ուրախ ժպտալով մոտեցավ Ումպը, ինձ համար այնքան

ցանկալի սիգարները ձեռքին։ Կիսով չափ թրջված, մի թռիչքով ես դուրս ցատկեցի կաթսայից, շոյեցի Ումպի գլուխը և կպցրի սիգարը։

— Թույլ տուր ամբողջ սրտով շնորհակալ լինել քեզ, սիրելի՛ Ումպ,— ասացի ես,— դու փրկեցիր իմ կյանքը։

— Է՞հ,— պատասխանեց Ումպը համեստորեն,— Ումպն ի՞նչ գործ ունի այստեղ։ Ումպը տխմար է։ Պարոնին փրկեց իր սքանչելի ատամածը, որին Ումպը գտել էր պարոնի ճամպրուկում։

## ԻՆՆԵՐՈՐԴ ԳԼՈՒԽ

## ՎԵՐԱԴԱՐՁ ԴԵՊԻ ՏՈՒՆ

Տուֆի-տուֆիների գյուղում բացառիկ ջերմ ընդունելություն էր սպասում մեզ։ Ֆուֆի Յոթերորդը հուզմունքից դողացող ձայնով ողջունեց մեզ։

— Սպիտակամորթ եղբայր Հարսնյակ,— ասաց նա,— սպանելով մեր կատաղի թշնամուն, որ խեղդեց Ֆուֆի Վեցերորդ թագավորին, դու անգնահատելի ծառայություն ես ցուցաբերել ինձ և իմ ժողովրդին։ Անչափ շնորհակալ ենք։ Իսկ սրանով (այդ բոպեին Ֆուֆի Յոթերորդը թագը դրեց գլխիս) քո անարժան եղբայրը քեզ հայտարարում է մեր բոլորի, ողջ ամբոխի թագավոր և տիրակալ Նորին Մեծություն Թագավոր Հարսնյակ Առաջին։

Հետո Ֆուֆի Յոթերորդը դարձավ Ումպին.

— Իսկ քեզ Նորին Մեծություն Թագավոր Հարսնյակ Առաջինին մարդակերների ձեռքից փրկելու համար ուզում եմ պարգևատրել։ Վերցրու իմ աղջկան՝ գեղեցկուհի Էգնիլիային։

Ումպը գունատվեց։

— Ես արդեն նշանված եմ ուրիշ աղջկա հետ,— ասաց նա անվստահ։

Դրությունը տանջալի էր։ Վերջապես ես հազացի և խոսք վերցրի։

— Սիրելի Թագավոր Ֆուֆի,— ասացի ես,— քո բարությունն ու առատաձեռնությունը սահման չունեն։ Բայց որքան որ Ումպն է անարժան ձեր աղջկան, այնքան էլ ես՝ թագ կրելուն, որը պսակում է ձեր գլուխը։ Ետ վերցրու այն, եթե դու ուզում ես որևէ բան պարգևատրել մեզ, ապա նվիրիր այն թիթեռի հարսնյակը, որից դու սովորաբար ճաշ ես եփում։

— Իհարկե, իհարկե,— պատասխանեց թագավորը հեծկլտալով։— Սիրտս արցունքով է լցվում, երբ հիշում եմ, որ դու մեզանից պիտի բաժանվես։

Հրաժեշտի պահը շատ տխուր էր։ Նրանք կանգնել էին ձեռքերի վրա, փռռացնում էին պոչերը և կատվի պես մլավում։

Բարձրավանդակի արկածներով լի ճանապարհորդությունը վերջացնելով, հասանք ծովափ՝ մեր փոքրիկ ճամբարին։ Այստեղ ջրի մեջ հրեցինք «Ննջարան» և լողացինք դեպի Շվեդիա։ Երկար ու դժվարին նավարկությունից հետո, վերջապես հասանք Ստոկհոլմ, որտեղ մեզ ընդունեցին չտեսնված ոգևորությամբ։

Ինչպես հայտնի է, հաջորդ օրը հանդես եկա մեծ զեկուցումով և որպես փաստական օրինակներ ցուցադրեցի թիթեռի հարսնյակը և Ումպին։ Թող գլուխ գովել չլինի, այդպիսի հափշտակված և զարմացած հասարակություն ես երբեք չէի տեսել, որպիսին այդ երեկո տեսա նիստերի դահլիճում։ Իսկ երբ զեկուցումս վերջացրի հետևյալ թևավոր խոսքերով՝ հյուր լինելը լավ բան է, բայց ավելի լավ է լինել տանը, հինգ րոպե անընդհատ որոտացին ծափահարությունները։

Հենց նույն երեկո ինձ հրավիրատոմս հանձնեցին ազնվականի կոչում շնորհելու մասին (ինձ բախտ վիճակվեց Շվեդիայի պատմության մեջ վերջինը ստանալ ազնվականի կոչում) և նոր հետազոտությունների համար 350 հազար կրոն գումար հատկացրին։

Դասախոսությունը իր գագաթնակետին հասավ, երբ հրավիրատոմսն ու չեկը հանձնեցին ինձ։ Հարսնյակի միջից դուրս եկավ մի հիասքանչ թիթեռ։ Աղմուկն անցավ նիստերի դահլիճով մեկ. բոլոր ներկաների աչքերը սևեռված էին տարաշխարհիկ գունեղ թիթեռին, բայց առաջ նետված լուսանկարիչը վախեցրեց նրան։ Թիթեռը թափահարեց թևերը, բարձրացավ, և մի քանի պտույտ անելով հասարակության գլխավերևում, բաց դռնից թռավ ուղիղ դեպի քաղաք։

«Սյունդսվենսկ Դագբլադեթ» Օգոստոսի 14-ի հաղորդման համաձայն, թիթեռին վերջին անգամ տեսել էր Ֆերդինանդ Ենսոն անունով մի գյուղացի։ Նա տեսել էր, թե ինչպես Նեդուցի վրա թռչելով գնում էր հարավ, դեպի արևը։

Օ՜, թևավո՛ր հյուր։ Միգուցե քեզ նորից տեսնեմ Նոր Սմոլանդիայում։

Ռուս. թարգմ. ԱԼ. ԹՈՓՉՅԱՆ





# ՔԵՌԻ ՔԱՄԵԼԵՈՆԸ

ՖԼՈՐԱ ԱՂԱՍԱՐՅԱՆ

Հայրս մի ծանոթ ուներ. նա երբեմն գալիս էր մեր տուն և երկար խոսում հորս հետ: Ամեն անգամ նրան ճանապարհելուց հետո, հայրս ծիծաղելով կրկնում էր.

— Քամելեոնը գնաց:

Ես փոքր էի, չէի հասկանում այդ բառի իմաստը և կարծում էի, թե նրա անունը Քամելեոն է:

Մի օր, դռան բախոց լսելով, վազեցի, բաց արեցի դուռը ու շեմին այդ քեռուն տեսնելով, ուրախ գոչեցի.

— Հայրի՛կ, քեռի Քամելեոնը եկավ:

Հայրս շփոթված ժպտաց, մայրս պինդ կամրեց թևս, իսկ քույրերս ծիծաղելով փախան սենյակից: Ես չհասկացա, թե ինչ կատարվեց իմ շուրջը: Ավելի շփոթվեցի, երբ քեռի Քամելեոնը խիստ վիրավորված տոնով մի քանի խոսք շպրտեց հորս և դուռն ամուր զարկելով հեռացավ:

Մերոնք սկսեցին ինձ նախատել:

— Ի՞նչ եք ուզում երեխայից. նա ի՞նչ է հասկանում,—բարկացավ հորեղբայրս և դառնալով ինձ, բացատրեց, որ Քամելեոն անվանում են փոփոխամիտ, քծնող ու սեփական կարծիքից զուրկ մարդկանց:

* * *

**Ա**նցան տարիներ: Ես արդեն դպրոցական էի, երբ հորեղբորս մոտ հյուր գնացի:

— Քեռի Քամելեոնին հիշո՞ւմ ես, կուզե՞ս տեսնել,—մի օր ծիծաղելով հարցրեց հորեղբայրս:

Ես չիմացա ինչ պատասխանել: Ինչպե՞ս այցելեմ այն մարդուն, որին վիրավորել եմ, թեև անգիտակցաբար: Անշուշտ, նա դեռ հիշում է այդ դեպքը:

Երևի հորեղբայրս հասկացավ իմ լռության պատճառը. թեյից բռնած առաջնորդեց դեպի դուռը և ծիծաղելով ասաց.

— Մի՛ վախենա, նա չի նեղանա, եթե քեռի Քամելեոն անվանես իրեն: Թե ո՞ւր էր ինձ տանում հորեղբայրս, չգիտեի:

Վերջապես մենք կանգ առանք մի մեծ այգու առաջ, որի հսկայական մուտքի վրա խոշոր տառերով գրված էր՝ «Կենդանաբանական այգի»:

— Այստե՞ղ է աշխատում քեռի Քամելեոնը,— հարցրի ես:

— Այո, պատասխանեց հորեղբայրս ու ծիծաղեց: Մի քանի կենդանիներ դիտելուց հետո մենք կանգ առանք մի ծառի մոտ: Հորեղբայրս նայեց վերև և ասաց.

— Ահա քեռի Քամելեոնի «գրասենյակը»:

Ես տարակուսանքով նայեցի վերև և սարսափից քարացա:

Ծառի սերևախիտ ճյուղին, ամուր կպած էր զարմանալի մի կենդանի: Կանաչագույն էր, երկար պոչը ոլորված էր խխունջի խեցու նման: Մարմինը նեղ էր, նրա ընկած կողերով, մեջքին՝ գլխից մինչև պոչը ձգվում էր ատամնավոր կատարը: Գլուխը լայն էր, նրբին ծնոտն ուռուցքաձև ու շատ մեծ: Ոտքի թաթերն աքցանի ձև ունեին, որոնցով ամուր բռնել էր ծառի ճյուղը և ոսկին էր հետապնդում:

— Այս կենդանու անունը քամելեոն է,—ժպտալով ասաց հորեղբայրս:

Ինձ առանձնապես զարմանք էին պատճառում նրա ուռուցիկ աչքերը: Ամուր կոպերի տակից երևում էին միայն բիբերը, որոնք նայում էին տարբեր ուղղությամբ:

Հորեղբորս օգնությամբ ես բարձրացա ծառի բունն ի վեր և ճյուղին կառչելով, լուռ հետևում էի այդ տարօրինակ ! նդանուն: Նա մարդկանց սովոր էր, այդ պատճառով իմ ներկայությունից բնավ չէր նեղվում:

Հենց իմ քթի մոտ մի ճանճ էր բզզում: Քամելեոնն իր աչքերն ուղղեց դեպի նա: Անակնկալից քիչ մնաց ընկնեի ծառից, երբ նրա բերանից որդի նման մի բան ձգվեց դեպի ճանճը և հափշտակելով, նորից չքացավ բերանում:

— Այդ երկար որդը նրա լեզուն է, որով միջատներ է որսում,—բացատրեց հորեղբայրս:—Ոտքերին նայիր,—շարունակեց նա,—ոտքի թաթը հետաքրքիր կազմություն ունի: Յուրաքանչյուր թաթի հինգ մատները ծածկված են մաշկային պարկով, երկու մատը մի պարկում, երեքը՝ մյուս, կարծես ձեռնոց է հագած:

Հորեղբայրս բարձրացավ ծառը և երկու ձեռքով ամուր բռնեց այդ տարօրինակ կենդանուն: Նա ֆսկույն տվեց, կլոր գունդ դարձավ և ատամներով պինդ բռնեց հորեղբորս ձեռքը: Նրա մաշկի գույնը անմիջապես փոխվեց. փորի մասը կապտավուն դարձավ, խալերը ավելի սևացան, կողաճաղերը դուրս ցցվեցին ու մարմինն այնպես թափանցիկ դարձավ, որ մուգ գծերի պես երևացին կրծքի վանդակի ոսկորները:

— Թվում է, թե ամուր է սեղմում, բայց մեծ ցավ չի պատճառում, թույլ կենդանի է,— ասաց հորեղբայրս:

Քիչ հետո քամելեոնը խաղաղվեց և նորից իր նախկին գույնն ստացավ:

— Տեսա՞ր, ինչպես գույնը փոխեց. ահա, թե ինչու էր հայրդ իր ծանոթին Քամելեոն անվանում: Նա էլ նեղն ընկնելուն պես խույքը փոխում էր, իր տեսակետից հրաժարվում:

— Ինչո՞ւ ծառից չի իջնում, մի՞թե քայլել չի կարող,— հարցրի ես:

— Սա ծառաբնակ կենդանի է. ներքև գրեթե չի իջնում, անշարժ նստած՝ աչքերով հետապնդում է ճանճերին ու միջատներին:

— Մի՞թե չի ծարավում:

— Ինչպե՞ս չէ, քամելեոնը առանց ուտելու կարող է մի քանի շաբաթ ապրել, բայց ծարավին չի դիմանում: Այդ պատճառով էլ նրանք տարածված են անձրևոտ վայրերում և իրենց ծարավը հագեցնում են տերևների խոնավությամբ: Ծառից իջնում են գլխավորապես ձու դնելու համար: Երկու օր անընդհատ գետինը փորում են, հետո մտնում 15 սմ. խորության փոսի մեջ և 25—30 ձու են դնում, փոսը հողով ծածկում են, վրան էլ չոր տերևներ ու ծղոտ դարսում:

Այդ օրից շատ տարիներ են անցել, ես երբեք չեմ մոռանում իմ տեսած մարդ և կենդանի քամելեոններին:

## ԱՌՅՈՒԾՆԵՐՆ ՈՒ ԿԶԱՔԻՍԸ

*Գազանների արքա առյուծը, որից սարսափում են բոլոր կենդանիները, երբեմն վախենում է ամենափոքրիկ կենդանուց:*

*Մոսկվայի կենդանաբանական այգում, մի անգամ ճաղերի արանքից առյուծների վանդակն է մտնում մի կզաքիս: Արու և էգ առյուծները սարսափած կուչ են գալիս վանդակի մի անկյունում և սկսում մռընչալ:*



*Կենդանաբանական այգու աշխատողներն առյուծների մռնչյունը լսելով, վազում են նրանց կողմը, և ինչքան մեծ է լինում նրանց զարմանքը, երբ տեսնում են, որ կզաքիսը շատ հանգիստ կերպով ուտում է առյուծների կերը, իսկ նրանք երկյուղից դողում են:*

*Կզաքիսին վանդակից դուրս բերելուց հետո միայն հզոր առյուծները կարողանում են հանգստանալ:*

## ԱՌԱՆՑ ՋՐԻ

*Կան կենդանիներ, որոնք ջուր խմելու պահանջ չեն զգում: Օրինակ, Պատագոնիայի սափաստաններում ապրում է այծյամի մի տեսակ, որն իր ամբողջ կյանքում ոչ մի կաթիլ ջուր չի խմում: Մի ճանապարհորդ պարզել է, որ օձերն ու խեցգետինները նույնպես չեն ծարավում: Ֆրանսիայում գետերից և աղբյուրներից հեռու մի ընդարձակ հովտում ապրում են յուրատեսակ կովեր, որոնք ամենևին ջուր չեն գործածում, բայց և այնպես տալիս են շատ քաղցր կաթ: Կան մարդիկ, որ նույնպես չեն ծարավում: Կենտրոնական Աֆրիկայի ամենանշանավոր ցեղերից մեկը՝ հոտենտոտները կարող են ապրել առանց ջրի, մինչև իսկ ամենաշոգ եղանակին:*

## ՋՐԱՍՈՒԶԱԿ ՁՈՒԿԸ

*Մի քանի տարի առաջ ստորջրյա կաբելի հանկարծակի վնասման հետևանքով Պերուի և էկվադորի միջև ընդհատվեց հեռախոսային կապը: Վերանորոգման համար ուղարկվեց մի սուզանավ: Պարզվեց, որ վիշապաձուկը (կետի հատուկ տեսակ) 1100 մ. խորության տակ խճճվել էր հատակին ընկած կաբելի մեջ: Փորձելով ազատվել, վիշապաձուկը փչացրել էր կաբելը և տեղն ու տեղը սատկել:*

*Հայտնի է, որ ծովաշները, ծովային ցուլերը 30—40 մետրից ավելի չեն խորասուզվում, իսկ բեղավոր կետերը՝ մինչև 200 մ:*

*Ինչու՞ էր վիշապաձուկը այդքան խորն իջել. հավանական է կեր փնտրելու նպատակով: Այսպիսով, վիշապաձուկը, որ սուզվում է մինչև 1000 մ. հանդիսանում է ջրասուզակային մրցման անգերազանցելի չեմպիոն:*

# ԴԵԿՏԵՄԲԵՐՅԱՆ ԵՐԿԻՆՔԸ




Ամառային երեկոներին ո՞վ չի զմայլվել աստղազարդ երկնքով: Նայում ես առկայծող երկնային մարմիններին ու տարվում տիեզերական անուրջներով: Հրաշալի՜ է:

Բայց աստղազարդ երկինքը հետաքրքիր է ո՛չ միայն ամռանը:

Ուրեմն, պատանի բարեկամ, տաք հագնվիր, և միասին դուրս գանք տնից ու տեսնենք, թե ինչ է իրենից ներկայացնում դեկտեմբերյան երկինքը:

Այսօր դեկտեմբերի 22-ն է, ձմեռային արևադարձի օրը: Ամբողջ տարվա մեջ այսօր է լինում ամենակարճ ցերեկը և ամենաերկար գիշերը: Մայրամուտից մինչև արևածագ տևում է 17 ժամ, իսկ ցերեկվան բաժին է ընկնում ընդամենը 7 ժամ:




Դե, հիմա նայիր վերև, ցուրտ դեկտեմբերի երկնակամարին, ուր պարզ, ադամանդի պես պսպղում են աստղերը: Անզեն աչքով երևում է վեց հազար աստղ: Եթե դու լավ ես հիշում ամառվա երկինքը, ապա կտեսնես, որ հիմա փայլում են այն համաստեղությունները, որոնք առաջ չէին երևում:

Բայց ինչո՞ւ ամռան ամիսներին նրանք չէին զարդարում մեր աստղալից երկինքը և միայն հիմա սկսեցին երևալ: Չէ՞ որ նրանք չէին կարող չքանալ տիեզերքից և ապա նորից վերադառնալ: Իհարկե, չէին չքացել. նրանք ամռանը երևում էին հյուսիսային կիսագնդում, ցերեկը, Արևի հետ միաժամանակ: Պատկերացրու մի ծառ, որի չորս բոլորը տներ կան: Պտտվելով ծառի շուրջը, դու ծառը հերթականորեն կտեսնես ամեն մի տան ֆոնի վրա:




Ճիշտ այդպես էլ, երբ Երկիրն իր ուղեծիրով պտտվում է Արևի շուրջը, կարծես թե Արևն է պտտվում երկնակամարում: Բայց եթե ծառի հետևում գտնվող տները մենք պարզ տեսնում ենք, ապա չենք կարող տեսնել այն աստղերը, որոնց ֆոնի վրայով անցնում է Արևը ամբողջ տարվա ընթացքում: Այդ աստղերը չեն երևում, որովհետև Արևի ցերեկային լույսը խանգարում է:

Տարվա տարբեր եղանակներին և օրվա տարբեր ժամերին յուրաքանչյուր համաստեղություն հորիզոնի նկատմամբ տարբեր դիրք է գրավում:




Դու երևի գիտես, որ համաստեղություն նշանակում է աստղային երկնքի մի հատված: Աստղերը ցրված են ամբողջ երկնակամարում, և ահա, աստղային երկնքում կողմնորոշվելու համար գիտնականները պայմանական կերպով խմբավորել են աստղերը և կոչել համաստեղություններ: Ընդամենը հաշվվում է 88 համաստեղություն:

Սակայն ըստ տարվա ամիսների թվի, կա 12 համաստեղություն, որոնք մեզ ցույց են տալիս Արևի տեղափոխությունը երկնակամարում: Դրանք կոչվում են կենդանակերպ համաստեղություններ: Ահա այդ համաստեղությունները այն հերթականությամբ, որով անցնում է Արևը դեկտեմբերի 22-ից հետո. Այծեղջյուր, Ջրհոս, Ձկներ, Խոյ, Ցուլ, Երկվորյակներ, Խեցգետին, Առյուծ, Կույս, Կշեռք, Կարիճ, Աղեղնավոր:




Գիտականորեն չի հիմնավորվում, թե համաստեղություններն ինչու են այդպես կոչվում. դրանք մասամբ կապված են հունա-հռոմեական դիցաբանության հետ:

Մինչև դեկտեմբերի 22-ը Արևը գտնվում էր Աղեղնավորի համաստեղության մեջ: Դրա համար էլ ոչ այս, ոչ էլ նրա հարևան համաստեղությունները չէին երևում մինչև այսօր կամ երևում էին շատ կարճ ժամանակով՝ մայրամուտից հետո և արևածագից առաջ:




Օրիոնը, Կետը, Մեծ Շունը, Փոքր Շունը, որ հարևան են Երկվորյակների համաստեղությանը, այժմ գտնվում են Արևի հակառակ կողմի երկնակամարում և դրա համար էլ երևում են:

Այժմ նայիր դեպի հարավ: Դու անմիջապես կտեսնես պսպղացող մի սպիտակ աստղ, որը մտնում է Մեծ Շուն համաստեղության մեջ: Դա Սիրիուսն է, մեր երկնակամարի ամենապայծառ աստղը: Որպեսզի չսխալվես և Սիրիուսի տեղ



չգնես մի ուրիշ պայծառ աստղ. փնտրիր այն՝ կողմնորոշվելով Օրիոնի համաստեղության օգնությամբ (տե՛ս նկարը): Սիրիուսը Արևին ամենամոտ գտնվող աստղերից է: Նրա լույսը մեզ հասնում է ավելի քան ութ տարվա ընթացքում: Իսկ լույսի արագությունը մեկ վայրկյանում 300 հազար կիլոմետր է: Սիրիուսը հեռավոր մեծ արեգակ է: Նա երկու և կես անգամ մեծ է մեր Արևից և 26 անգամ ավելի պայծառ:







Քանի որ Սիրիուսը գտնելու համար դու իմացար Օրիոնի տեղը, ապա ուշադրություն դարձրու այս համաստեղության երկու աստղերի վրա: Վերևի ձախ անկյունում պայծառ վառվում է Բետելհեյզեն: Նրա մակերևույթը երկու անգամ սառն է Արևի մակերևույթից. ջերմաստիճանը 3 հազարից մի քիչ է անցնում: Բայց Բետելհեյզեն 2800 անգամ ավելի շատ լույս է տալիս և 27 միլիոն անգամ մեծ է մեր Արևից:




Իսկ ինչո՞ւ այդ աստղ-հսկան այդքան փոքր է երևում: Որովհետև նա շատ հեռու է: Նրա լույսը մեզ հասնում է երեք հարյուր տարվա ընթացքում:




Հիմա նայիր Օրիոնի համաստեղության ներքևի աջ անկյան պայծառ աստղին՝ Ռիգելին: Եթե Բետելհեյզեն պատկանում է կարմիր հսկաների թվին, ապա Ռիգելը ամենամեծ սպիտակ հսկան է: Սա 20 հազար անգամ պայծառ է Արևից և ավելի հեռու է մեզանից, քան Բետելհեյզեն: Ռիգելի լույսը Երկիր է հասնում 540 տարում: Այժմ դու տեսնում ես այն ճառագայթները, որ այդ աստղը ուղարկել է մոտավորապես 1421 թվականին:




Կետ համաստեղության մեջ կա մի զարմանալի աստղ, որը կոչվում է Միրա: Հենց անվանումն ինքը հունարեն նշանակում է զարմանալի: Միրան Բետելհեյզեի նման պատկանում է կարմիր հսկաների թվին: Բայց զարմանալին դա չէ, այլ այն, որ Միրան շատ ուժեղ փոխում է իր փայլը յուրաքանչյուր 11 ամսվա ընթացքում: Զորս ամիս անընդհատ մեծանում է նրա պայծառությունը, հետո մոտ մեկ ամիս Միրան լույս է տալիս ինչպես երկրորդ մեծության աստղ, ապա սկսում է աստիճանաբար մարել և դառնալ անտեսանելի աստղիկ, որին կարելի է տեսնել ուժեղ աստղադիտակով: Պայծառության փոփոխության հետ փոխվում են նաև Միրայի չափսերը: Երբ նա հասնում է իր ամենամեծ սահմանին, նրա մեջ կարող են տեղավորվել մեր Արևի նման երեսուն միլիոն արև:




Միրայի այդ զարմանալի փոփոխությունը նկատել են ավելի քան 3 հազար տարի առաջ: Բայց քսան տարի առաջ հայտնագործեցին, որ Միրան կրկնակի աստղ է: Միրայի արբանյակը շատ փոքր է, Երկրից մի քիչ է մեծ, իսկ Միրան կարմիր հսկա է: Ասես փիղ ու շնիկ լինեն: Նայիր Մեծ Արջի համաստեղությանը. «շերեփի» պոչի մեջտեղի աստղը կոչվում է Միցար: Դեռևս հնում արաբները դրանով ստուգում էին մարդկանց տեսողությունը: Ով սուր աչք ունի՝ կարող է տարբերել, որ այն իրենից ներկայացնում է երկու աստղ, իսկ աստղադիտակով ամեն մարդ կարող է տեսնել Միցարի արբանյակին՝ Ալկոր աստղիկին. ալկոր արաբերեն նշանակում է փորձարկիչ:




Ահա մի ուրիշ հետաքրքիր աստղ՝ Կապելլան, որը մտնում է Կառավարի համաստեղության մեջ: Սիրիուսից հետո Կապելլան ձմեռային գիշերների ամենապայծառ աստղն է: Կապելլան նույնպես բաղկացած է երկու աստղից, որոնք շատ նման են մեր Արևին: Բայց Արևը իր մեծությամբ շարքային աստղ է, նույնիսկ դեղին թզուկ, իսկ այս երկու աստղերը դեղին հսկաներ են: Նրանցից մեկը 105, իսկ մյուսը 80 անգամ պայծառ են Արևից:




Դու արդեն գիտես լույսի արագությունը, փորձիր հաշվել, թե քանի՞ կիլոմետր է մինչև Կապելլան, եթե նրա լույսը մեզ հասնում է 52 տարում:




Դե, պատանի բարեկամ, այսօր բավարարվենք այսքանով. երկնքում շատ աստղեր ու տիեզերական գաղտնիքներ կան, բոլորի մասին հնարավոր չէ խոսել: Գրիր, թե քեզ ի՞նչ հարցեր են ավելի շատ հետաքրքրում, կաշխատենք հնարավորության սահմաններում պատասխանել:



# Բալիկիս

ՇՄԱՎՈՆ ԹՈՐՈՍՅԱՆ

Սիրի՛ր, սիրի՛ր պապին.
Տե՛ս, ծերանում է նա,
Հին օրերի սպին
Իր ճակատի վրա:
Անուշ մանկիկ, գիտե՞ս
Ինչպես ջահել էր նա,
Երբ որ կռվի նետվեց
Պալատների վրա:
Նա մեծ ջանքով բերեց
Հաղթանակը բարու.
Կռիվներում այն մեծ՝
Թափեց որքա՜ն արյուն:
Եվ այս սպին մնաց
Իր ճակատի վրա.
Մազերը ճերմակած՝
Դափնիներն են նրա:
Փափլիկ, փափլիկ ձեռքով,
Շոյիր նրա սպին,
Դստրիկ իմ քնքշաթով,
Սիրի՛ր, սիրի՛ր պապին:

# ԻՆՉ ԴԺՎԱՐ Է

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

Մայրիկի գոգնոցը կախ է ընկել Անահիտի ոտներին: Վեր բարձրացնել անհնար է. առանց այն էլ գոգնոցը կապված է վզին: Դա չի խանգարում, սակայն, որ նա տանտիրուհի զգա իրեն և կարգադրություններ անի: Սեղան ու տիկնիկը հնազանդվում են, Մհերը՝ ոչ: Մինչ «տանտիրուհին» մտնում է խոհանոց ու դուրս գալիս, Մհերը սեղանը խառնում է իրար: Անահիտը բարկանում է, հանդիմանում անհնազանդ տղային, բայց անօգուտ: Մհերն իր հերթին աչքերը խոժոռում է հայրիկի նման, շրթունքները ուռցնում.

— Կատամ, Անդլա, Ֆիրանոա, հա...

Անահիտն սկսում է սիրաշահել եղբորը.

Մհերիկ ջան, ափսեները մի խառնի, հա: Հիմա պիտի ճաշ ուտենք, և սկսում է հավաքել հատակին թափված դանակներն ու պատառաքաղները:

Մհերը կարծես լսում է քրոջը. իջնում է աթոռից և օգնում նրան այստեղ-այնտեղ ընկած իրերը հավաքելու:

— Անանա, ափիս, — ասում է նա, քրոջը պարզելով պլաստմասսայե փոքրիկ ափսեն:

# Քոթոթը



ՎԵՐՈՆԻԿԱ ՄԱՐԵԿ

Մեկը մեկին շատ չէ նման,
Բայց եղբայր են անպայման:
Ա՛յ, մի բանում նույնն են արդեն.
Ինչ-որ տեսնեն, պիտի ջարդեն:
Խաղապարանն ամուր էր, նոր,
Բայց արեցին կտոր-կտոր:
Գնացքներն ու երկաթուղին
Ջարդուփշուր արին, թողին:
Գնդակ էլ կար՝ վրան գծեր,
Բայց, ա՛յ, թե ինչ օրն են գցել:
Գիրք նվիրեց մի բարեկամ,
Բայց ամոթ է նայելն անգամ:
Բան չթողին երկու տղան.
Էլ ի՞նչ ջարդեն, ինչպե՞ս խաղան:

# ՄԱՅՐԻԿ ԼԻՆԵԼ...

Նկ. ՌՈՒԴՈԼՖ ԽԱՉԱՏՐՅԱՆԻ

— Ապրես։

«Տանտիկինը» նորից շտապում է խոհանոց։



— Սեդիկ, տիկնիկին արթնացրու, ճաշը բերում եմ,— ձայն է տալիս նա խոհանոցից։

Սեդիկն զգուշությամբ արթնացնում է տիկնիկին, նստեցնում մանճակալի մեջ։ Տիկնիկը բացում է աչքերը և հնազանդորեն սպասում նոր կարգադրությունների։

Հանկարծ լսվում է մի ուժեղ շրխկոց։

— Ի՞նչ եղավ։

Անահիտը ներս է ընկնում սենյակ ու ի՞նչ տեսնի։ Մհերը սփռոցը քաշել է ու ամեն ինչ թափել հատակին։ Ափսե, դանակ, գդալ ու պատառաքաղ շաղ են եկել սենյակով մեկ։

— Ախ, անպիտան,— և Անահիտը քիչ է մնում լաց լինի, բայց զսպում է իրեն. մայրիկը չպետք է լա։

Մհերը մտել է մանճակալի տակ ու տագ արել։

— Թե մի դուրս կգաս...

Բայց Մհերն առայժմ միտք չունի դուրս գալու իր թաքստոցից։

Անահիտն ու Սեդան սկսում են սեղանը կարգի բերել։ Հանկարծ Անահիտը հիշում է.

— Ախ, հիմի կոտլետը վառվեց,— ու նետվում է դեպի խոհանոց։

Դուռը ծեծում են։ Սեդիկը գնում է բանալու։ Մայրիկն է՝ ծանրաբեռնված զամբյուղով ու ցանցով։ Սեդիկը մոր ձեռքից վերցնում է զամբյուղը, ներս տանում։

— Որ ասում էի՝ հիմի վառեց,— լսվում է Անահիտի հուսահատ ձայնը։— Կոտլետը բոլորովին այրվել է...

Մայրիկը մտնում է խոհանոց։ Անահիտը



Մտածմունքը տևեց շատ կարճ.
Մայրը նրանց նվիրեց արջ.
Եղբայրները ուրախացան,
Ծափ տվեցին, գործի անցան.



Ամեն ձևի շոր հագցրին,
Ինչ ուզեցին, այն դարձրին.
Դարձրին զինվոր, դարձրին ցրիչ,
Ճաշ մատուցող, ընտիր սափրիչ,
Ժիր ֆուտբոլիստ, փչան որսորդ,
Ե՛վ խոհարար,
Ե՛վ դիրիժոր, և՛ նկարիչ։
Իսկ հիմա էլ երկու տղան
Բժիշկ-բժիշկ պիտի խաղան։
— Երկար-բարակ եկ չդատենք,
Հիվանդ է սա. վիրահատե՛նք։ —
Մեկը կանգնել, մյուս լղպորը
Մկրատում է արջի փորը։
Բայց հիշեցին պահմտոցին,
Խեղճին թողին հին բազմոցին,
Դուրս գնացին.
Երբ եկան ետ,
Չքացել էր արջը անհետ։





արցունքոտ աչքերով կանգնել է նավթավառի մոտ և դանակով շուռումուռ է տալիս սևացած փոքրիկ կոտլետները: Աղջկա երեսն ու քիթը ալյուրոտ են, մազերը՝ գզգզված, ճակատին քրտինքի կաթիլներ կան:

Մայրիկը ժպտում է:

—Բան ՛չկա, ես հիմի նորը կպատրաստեմ:

Անահիտը հանում է գոգնոցն ու թեթևացած շունչ քաշում:

Օ՜ֆ, ինչ դժվար է մայրիկ լինել...

# ԻՆՉՈ՞Ւ ԷՐ ՏԽՈՒՐ ԱՂՋԿԱ ԺՊԻՏԸ

ԿԱՐԼԵՆ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

— Դու վատն ես, քեզ հետ չեմ խաղա,— ասաց աղջիկը:

Տղան ժպտաց:

— Կխաղա՛ս, կխաղա՛ս,—գլուխը տմբտմբացրեց նա:

— Չեմ խաղա, դու վատն ես:

— Կխաղա՛ս,— համառեց տղան:

Աղջիկը բարկությունից լաց եղավ:

— Տըը՜կկ,—կատակեց տղան, — լաց-կան, լացկան:

Աղջիկը ուզեց լաց չլինել, բայց չկարողացավ:

Տղան ախորժակով կծեց կարմրաթուշ խնձորն ու ցանկացավ նորից գժվացնել:

— Տըը՜կկ, լացկա՛ն:

— Ո՜ւ,— լեզու ցույց տվեց աղջիկը:

— Ի՜, այդ ո՞ւմ ես գժվացնում,—բարկացավ տղան:

— Քե՛զ,— ուրախացավ աղջիկը: Նրա արցունքոտ աչքերը փայլեցին:

— Ի՞նձ:

— Հա՛, հենց քե՛զ: Դու շատ վատն ես:



Գուցե փորձա՞նք է պատահել,
Կատակո՞վ են գուցե պահել՝
Դռան հետև պահարանի,
Անկողնու տակ, ծառի ճյուղին,
Սալի վրա վառարանի
Կամ անկյունում մութ նկուղի:
Թե՞ տղան է հարևանի
Արջին տարել, որ խաղ անի:
Ու վնեցին թողած խաղը.

— Լավ, կփնտրենք արջին վաղը:

Լույսը բացվեց: Գտնել արջին—
Ահա՛ նրանց գործն առաջին:
Այստեղ չկա,
Այնտեղ չկա,



— Դե առ քեզ,—տղան հրեց աղջկան։

Աղջիկը ընկավ, ծունկը ցավեց։

— Ո՜ւ, այս անգամ ցավը կսպելու համար լեզու ցույց տվեց աղջիկը։

Տղան ծամերից քաշեց և աղջիկն էլ սկսեց բարձրաձայն լաց լինել։



Նրանց մոտեցավ տղայի մայրը։

— Ինչո՞ւ ես լալիս, Ալվա՛րդ։

Աղջիկն ավելի ուժգին լաց եղավ։

— Դու ինչ վատն ես, Աշո՛տ,— տղային դարձավ մայրը,— ինչո՞ւ ես ծեծում աղջկան։

— Թո՛ղ ինձ չգժվացնի։

— Դու բկլիկ ես, ավնիվ խոսք, բկլի՛կ,— ասաց աղջիկը։

Տղան չպատասխանեց։ Գլուխը կախ նայեց ձեռքի խնձորին։

— Դու երկու հատ կերար, ինձ ոչ մի հատ էլ չտվեցիր։

— Ամո՛թ քեզ, Աշո՛տ, բա չասացի՞, որ մեկն էլ կտաս Ալվարդին։

— Մոռացա,—մրթմրթաց տղան,—ա՛ռ,—և ձեռքի վերջին խնձորը պարզեց նրան։

---

Ո՛չ մի արջուկ ծառի ճյուղին,
Սալի վրա վառարանի,
Կամ անկյունում մութ նկուղի,
Տղայի մոտ հարևանի։
Բա ի՞նչ եղավ.
Թողեց-փախա՞վ։



Տխուր-տրտում երկու եղբայր
Ահա ընկնում են ճանապարհ։
Գտան կածան,
Սար բարձրացան,
Հարցրին փոքրիկ մի աղջկա.
— Այս կողմերում արջուկ չկա՞,
Պատռած շորով,
Պատռած փորով։
— Չէ՛, չեմ տեսել։ Լավ չե՛ք արել.
Ուշք չեք դարձրել...
Գնացել է գուցե գետա՞փ։
Վազե՛ք շտապ։



Սարը թողած՝
Վազեցին ցած.
Մի տղայի տեսան ջրում։
— Արջուկ չկա՞ այս կողմերում՝
Պատռած շորով,
Պատռած փորով։
— Չէ՛, չեմ տեսել.
Բայց կարող եմ հաստատ ասել,
Որ փախել է արջը անտառ։
Վազե՛ք, էլ մի՛ առեք դադար։
Եկան անտառ խուլ, ամայի։
Սունկ հավաքող մի տղայի
Հարցրին այսպես կտրուկ ու կարճ.
— Այս կողմերում չե՞ս տեսել արջ՝
Պատռած շորով,
Պատռած փորով։
— Չէ՛, չեմ տեսել։ Որ չեք գտնում,
Փնտրեք մոտիկ մարզագետնում։



Աղջիկը չուզեց:

— Վերցրո՛ւ, վերցրո՛ւ,— միջամտեց տղայի մայրը:

Աղջիկը բոլորովին չէր ուզում վերցնել: Նախ որ տղան նրա մազից էր քաշել, իսկ հետո... տղան հենց սկզբից պիտի տար, առանց ասելու:

— Վերցրո՛ւ, վերցրո՛ւ:



Նկ. ՄԱՆՈՒԿ ՂՐԴՅԱՆԻ

Ստիպված վերցրեց:

Տղան ուրախացած ժպտաց: Աղջիկն էլ ժըպտաց, բայց չգիտես ինչու, տղային թվաց, թե տխուր էր նրա ժպիտը:

## ՀԱԶԱՐԻՆ ԳՈՒՄԱՐԱԾ ՀԱԶԱՐ

ԱՐՏԱՇԵՍ ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ

Սաթիկը սկսել է Ալիկին թվաբանություն սովորեցնել: Ծալում է ձեռքի բոլոր մատները, ապա թողնում մեկը.

— Քանի՞ մատ է, Ալիկ:

— Մեկ,— ասում է Ալիկը ու ինքն էլ է բացում իր մատներից մեկը:

— Իսկ հիմա՞,— Սաթիկը բացում է մյուս մատը:

— Երկու,— ասում է Ալիկը:

— Ուրեմն մեկին գումարած մեկ, ի՞նչ կանի:

— Երկու,— ասում է Ալիկը ու լսելով Սաթիկի «ճիշտ է» բացականչությունը, հրճվում, ծիծաղում է, այնպես է ծիծաղում, որ շառագունում են այտերը:

— Տեսա՞ր,— ասում է նա հաղթական:

Հետո Սաթիկը նրան սովորեցնում է քիչ ավելի մեծ թվերի գումարումը, և Ալիկը վերջապես օգտագործում է իր բոլոր մատները:

Ու հանկարծ՝

— Իսկ հազարին գումարած հազար ի՞նչ կանի:

Ալիկը գիտե, որ հազարը մեծ թիվ է,



Տխուր-տրտում երկու եղբայր
Նորից ընկնում են ճանապարհ.
Ո՞ւր ես, խե՜ղճ արջ... Նա մոլորվել,
Բարձր սարի՞ց է գլորվել:
Գուցե խեղդվե՞լ է խոր գետում,
Գուցե կորե՞լ է թավուտում:
Զո՞հ է դարձել գայլին ագահ...
Ո՞վ իմանա. չկա՜, չկա՜:

Մարգագետին հասան արագ.
Ձխոսելով երկար-բարակ,
Իսկույն հարցրին մի աղջկա.
— Այս կողմերում արջուկ չկա՞
Պատռած շորով,
Պատռած փորով:
— Ոչ՜, չեմ տեսել, չեմ իմանում,
Ո՛ւր է փախել, ի՞նչ է անում:



Ա՜յ քեզ հրաշք. մայրը հանկարծ
Ներս է մտնում՝ արջը գրկած:
Ինչպե՞ս: Հապա՜: Չէր մոլորվել,
Բարձր սարից չէր գլորվել,
Ո՛չ խեղդվել էր վարար գետում,
Ո՛չ կորել էր խոր թավուտում,
Ո՛չ զոհ դարձել գայլին ագահ.
Դուրս չէր եկել տնից անգամ...

բայց թե որքան է, չի իմանում։ Նայում է մատներին, հաշվում է մինչև տասը, նորից է նայում ու նորից հաշվում մինչև տասը։ Տասից այն կողմ չի կարողանում անցնել։



Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Տխրում է Ալիկը, կիտում է հոնքերը ու հանկարծ ասում բարկացկոտ ձայնով.

— Դե ինձ հազար հատ մատ բեր, որ հաշվեմ։

Ու Սաթիկը ծիծաղում է։ Դե որտեղի՞ց բերի հազար մատ։

— Տեսա՞ր, - Սաթիկին պարտված համարելով, կրկին հրճվում է Ալիկը։

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

# Տիկնիկիս համար



Նկ. ՀՐԱՑՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

Նոր շոր եմ կարել տիկնիկիս համար.
Օձիքը՝ կլոր, թևերը՝ երկար։
Գրպանի վրա նախշեր եմ արել,
Փեշի բերանն էլ շատ խորն եմ ծալել,
Որ երբ տիկնիկս բոյ քաշի էլի,
Ծալածը բացեմ՝ շորը երկարի...





Մայրն ուղղակի նկատել էր.
Տարել, փորը կարկատել էր։
Եղբայրներն են ուրախանում,
Գրկում արջին ու խաղ անում...
Նրանց հետ է արջը բարի
Արդեն քանի՜, քանի՜ տարի։

*Գերմաներենից չափածո վերապատմեց՝*

ՊԱՐՈՒՅՐ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*



# Պիոներ

Բաժինը վարում է Հայկական ՍՍՌ ժողովրդական արտիստ ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀԱԿՈԲՅԱՆԸ

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՖՈԿՈՒՍ

### ԹԱՇԿԻՆԱԿԻ ՀԱՅՏՆԱԲԵՐՈՒՄԸ ՄՈՄԻ ԲՈՑԻՑ



Նկ. 1



Նկ. 2





Նկ. 3

Այս համարը ցուցադրելու համար հարկավոր է նախօրոք սեղանին դնել մոմակալի մեջ հագցված, կամ սովորական լուցկու տուփի վրա իր սառած կաթիլներով ամրացված մի մոմ:

Մոտենում եք սեղանին և մոմը վառում լուցկով, որից հետո լուցկու տուփը դնելով սեղանին՝ ձեռքը տանում եք դեպի բոցը և այնտեղից դուրս քաշում գունավոր մի թաշկինակ:

Առաջին հայացքից դա բոլորովին անհավատալի է թվում. բայց մենք բոլորս գիտենք, որ աշխարհում հրաշքներ չեն կատարվում: Իսկ այդ ֆոկուսն այնքան հասարակ է, որ նրա ամբողջ գաղտնիքն ամփոփված է սովորական լուցկու տուփի մեջ:

Նախքան ֆոկուսի ցուցադրումը՝ դուք վերցնում եք լուցկին, հանում պատյանից տուփը, դատարկում լուցկիները և տուփի հակառակ երեսին սոսնձով փակցնում մի քանի հատ լուցկի: Դատարկ տուփի մեջ տեղավորում եք 25×25 սմ. չափսի մետաքսյա գունավոր մի թաշկինակ (տես Նկ. 1 և 2): Այս ամենը կատարելուց հետո՝ վերցնում եք մեկ լուցկու հատ, առանց սոսնձելու պահում փակցրած լուցկիների վրա և տուփը հագցնում պատյանի մեջ այնպես, որ պիտակը լինի լուցկիների կողմում: Ապա, մոտենալով սեղանին, լուցկու տուփը կիսով չափ բաց եք անում և դուրս


Խմբագիր՝ ՍԱՔՈ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (պատասխանատու խմբագիր). ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար). ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41

Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 2—41—83, 2—59—06:

ՎՖ 01918 Պատվեր 1578 Տպաքանակ՝ 7400: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 3/XII 1961 թ.: ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91: Գինը 20 կ.:




քաշում ազատ լուցկին: Հենց այդ ժամանակ տուփի մեջ դրված թաշկինակն ընկնում է ձեր ափի մեջ (տես Նկ. 3). դուք այն սեղմելով բռունցքի մեջ, փակում եք լուցկու տուփը և աջ ձեռքում գտնվող լուցկին բոցավառելով՝ մոմը վառում: Որից հետո լուցկին դնում եք սեղանին, ձեռքը մոտեցնում բոցին, բաց անում բռունցքը և դուրս սահող թաշկինակի ծայրից բռնելով՝ վեր բարձրացնում այն: Ստեղծվում է այնպիսի տպավորություն, որ դուք թաշկինակը հանում եք ուղղակի բոցի միջից (տես Նկ. 4):

Հարկ եմ համարում նորից հիշեցնել, որ ձեր բոլոր շարժումները պետք է լինեն չափված-ձևված, արագ և ճկուն, որպեսզի չմատնեք ֆոկուսի գաղտնիքը և կարողանաք հանդիսականին իսկապես զարմացնել:




## ՀԱՆՐԱԾԱՆՈԹ ԳՈՐԾԻՔԻ ԱՆՈՒՆ

*Այստեղ գծված են տեղագրական քարտեզի վրա օգտագործվող 10 պայմանական նշան:*

*Յուրաքանչյուր պայմանական նշանի անունից վերցնելով մեկական տառ՝ կստանաք հանրածանոթ գործիքի անուն: Իսկ թե որ տառն է հարկավոր վերցնել՝ ցույց է տալիս պայմանական նշանի կողքին գրված թվանշանը:*

*Առաջարկ՝ Գ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*

## ՉԱՅՆՎՈՐԴ „ԱՐՎԵՍՏ“

*1. Հայ ականավոր դերասան, 2. Չիլիական բանաստեղծ, Ստալինյան մրցանակի լաուրեատ, 3. Հայ մեծ լուսավորիչ, 4. Ալ. Շիրվանզադեի ստեղծագործություններից, 5. Սովետահայ ականավոր գրող, 6. «Ես իմ անուշ Հայաստանի...» երգի երաժշտության հեղինակը, 7. Ռուս մեծ բանաստեղծ, 8. Բուլղարական ժողովրդական մեծ գրող, «Լծի տակ» վեպի հեղինակը. 9. Իսպանացի մեծ նկարիչ, ռեալիստ-արվեստագետ, 10. Ժամանակակից հայ խոշոր նկարիչ, ՍՍՌՄ Գեղարվեստի Ակադեմիայի իսկական անդամ, 11. Երաժշտական ձայնանիշի պայմանական անուն:*

*Կազմեց՝ Շ. ԽԱՉԱՏՐՅԱՆ*







## ԽԱՉԲԱՌ «ՇԱԽՄԱՏ»

*Սլաքներում գրված սկզբնատառերի օգնությամբ՝ գրեցեք սովետական անվանի շախմատիստների ազգանունները:*

*Կազմեց՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆ*

Մրցանակաբաշխության նյութերից



ԾԱՂԻԿՆԵՐ

ԶԻԳԵՐՋՅԱՆ ՄԵԼԻՔՍԵԹ
(Երևան, 96-րդ դպրոց, 12 տարեկան)



ԳՅՈՒՂ ՏԱՆՈՂ ՃԱՆԱՊԱՐՀԸ

ՏՈՆՈՅԱՆ ՄԱՐՏԻՆ
(Լենինական, Մայակովսկու դպրոց, 14 տարեկան)